


# ՁՄԵՌ ՊԱՊԻ ԾԻԾԱՂԸ

*ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

Հեռո՜ւ-հեռո՜ւ անտառից,
Ձյունե մուշտակն իր հագած,
Ձմեռ պապին է եկել՝
Ճերմակ պարկեր շալակած:
Ու ժպտում է բեղի տակ,
Ու մեզ աչքով է անում:
Եվ ժպիտով նրա տաք
Մեր հանդեսն է տաքանում:
— Մի՛ ծիծաղիր, Ձմե՛ռ պապ,—
Կատակում է մի աղջիկ,—
Ծիծաղելուց այդքան շատ
Քո մորուքը կհալչի:—
Բայց պապիկը փնալով՝
Իր ծիծաղն է սաստկացնում.
— Չէ՜,— ասում է,— ծիծաղով
Ձեր տարին եմ քաղցրացնում:
Ծիծաղեցե՛ք, բալիկնե՛ր,
Տխրությունը լավ բան չի:
Ուրախության համար ձեր
Թող իմ մորուքը հալչի:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*



# ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԵՐԵԽԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Գ. ԿԱՐՊԵՆԿՈ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԹՈՐՈՍՅԱՆԻ

Կարմիրգվարդիականների մի ջոկատ Պուտիլովյան գործարանի տարեց բանվորի գլխավորությամբ մոտեցավ շքեղ առանձնատանը: Բանվորները պոկեցին քանդակազարդ դռանը խաչաձև մեխված տախտակները և ներս մտան: Լայն մարմարե սանդուղքներին հաստ շերտով փոշի էր նստել, սենյակներում իրերը թափթփված էին այս ու այն կողմ, հատակին փռված էին պատառոտված թղթեր ու նամակներ: Ամեն ինչից երևում էր, որ առանձնատան տերերը շտապել էին լքել այն:

— Տեսնո՞ւմ եք ինչպես են հեղափոխությունից ճողոպրել,— ծիծաղեց իր հասակից անհամեմատ մեծ բաճկոն հագած, մեծ գլխարկով պատանին: Նա էլ մյուսների նման հրացան ուներ ուսին:

— Այս ամենը ճամպրուկներով տանել հնարավոր չէ,— ասաց հրամանատարը:

Կարմիրգվարդիականները զննում էին ոսկեզօծ կահույքը: Ինչ-որ մեկը բարձրացրեց դաշնամուրի կափարիչը և զարկեց ստեղներին:

— Վե՛րջ տուր,— խիստ ասաց հրամանատարը, և պատվիրեց դաշնամուրը մի կողմ հրել՝ կոտրված պատուհանից որքան կարելի է հեռու:

— Քամին դրսից ձյուն է բերում, կթրջվի, կփչանա, հիմա այս բոլորը ժողովրդի սեփականությունն է:

Կարմիրգվարդիականները կոտրված պատուհանը տախտակով փակեցին, խնամքով դասավորեցին բյուրեղապակյա իրերը, գրքերն իրենց տեղը դրեցին, գետնից հավաքեցին պատռոտված թղթերը· գուցե պետքա-

# Ձմեռային հանելուկներ

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

Արևը շոյում է բոլորին, և բոլորն էլ սիրում են նրան, բացի մեկից: Կարո՞ղ եք ասել. ո՞վ է արևից վախենում:

Ձնեմարդը

Վրձին չունեմ, ոչ էլ ներկեր, բայց ձեր այտերը կարմիր կներկեմ: Ո՞վ եմ ես:

Սառնամանիքը

Չեմ գնել, չեմ կարել, բայց տաք մուշտակ ունեմ: Ո՞վ եմ ես:

Արջը

Կարելի՞ է արդյոք գետակը կոտրել: Այո՞: Ուրեմն ասացեք, թե երբ:

Երբ գետակը սառած է

Առավոտյան Քնարիկը նայեց պատուհանից և ծառի մերկ ճյուղերից կախված սառցալուլաներ տեսավ: «Ինչ գեղեցի՜կ են,— մտածեց նա,— երբ եղբայրս գա, նրան էլ ցույց կտամ»:

Երբ երեկոյան Քնարիկը վերադարձավ մանկապարտեզից, եղբայրն արդեն տանն էր:

— Տե՛ս, ինչ գեղեցի՜կ սառցալուլաներ են կախված ծառից,— ասաց Քնարիկը:

Եղբայրը մոտեցավ պատուհանին, բայց սառցալուլաները այլևս չկային: Ո՞վ էր բարձր ծառից պոկել սառցալուլաները:

Արևը

կան բա՞ն են: Ամեն ինչ հարկավոր էր հավաքել և ցուցակագրել: Գործարանում հավանաբար կորոշեին առանձնատունը բանվորական հանրակացարան դարձնել: Պիտերի թույլ արևը լուսավորում էր բարձր պատուհանները: Հսկայական սենյակի եղյամով ծածկված պատերին նկարներ էին կախված: Առաջինը մետաքսե



կամզոլով մի ծերունու նկար էր: Ծերուկը ասես կանգնել էր՝ բրոնզե շրջանակին հենված և, աչքերը խորամանկորեն կկոցած, նայում էր եկվորներին:

— Նայի՛ր, կարծես կենդանի լինի,—հրացանն ուղղելով ասաց պատանին: Հրամանատարը չպատասխանեց: Մի նկարից մյուսին անցնելով, հիմա նա հմայված նայում էր աղմկող ծովին. սպիտակ ահռելի ալիքները կարծես խուլ աղմկում էին, ամպերում փայլատակում էր կայծակը: Ահա և լեռների լուսաբացը: Կիրճում դեռ գիշերային մառախուղ է, իսկ գագաթները լուսավորված են արևածագի կարմիր ցոլքերով: Ահա երկաթե թմբուկը ձեռքն առած աշխույժ պարում է մի աղջիկ: Կողքի նկարում ծաղիկներ են:

— Ամեն ինչ նրանցն է եղել՝ և՛ հարստությունը, և՛ իշխանությունը, և՛ գեղեցկությունը,— մռայլ կրկնում էր հրամանատարը:

— Պարզ է, միլիոնատերեր են, շահագործողներ,— ասաց պատանին:

Եվ հանկարծ հրամանատարը լուռ ետ-ետ գնաց և հանեց գլխարկը: Նրա առջևի նկարում անտառի թավուտ էր և փափուկ մամուռների վրա քնած մի տղա: Ծառերի սաղարթի միջով թափանցող արևը լուսավորել էր նրա գլուխը, փոշոտ բոբիկ ոտքերը և կիսամաշ քաթանե բլուզը: Այտը հենած ձեռքին՝ տղան ժպտում էր երազում: Նրա կողքին, ճյուղերից հյուսված կողովի մեջ անտառային հասուն պտուղներ էին լցված:

Հրամանատարը զգուշորեն նկարի վրայից մաքրեց սարդոստայնը և կողովի միջի պտուղները կարծես հյութով լցվեցին:

— Հրա՞շք է,— շշնջաց հրամանատարը:

Նրա կողքին կանգնած պատանին էլ էր հանել գլխարկը: Հրամանատարը՝ արդեն ալեխառն մազերով Ստեփան Եգորովիչը երկար նայեց կտավին: Նա հիշեց իր հեռավոր մանկությունը՝ անտառը, գետակը, ընկերոջը, որի հետ ամբողջ օրը թափառում էր խոնավ կավո՛վ լի խանդակներում: Այդ կավից Ստյոպան կախարդներ ու երկար բաշով ձիեր էր քանդակում: Հիշեց, թե ինչպես էր բարկացել մայրը, երբ մի օր ածուխով նկարել էր վառարանի վրա, հետո, թե ինչպես մի օր դպրոցի ուսուցիչը իրեն տարավ կալվածք: Ուսուցիչը մտավ կալվածատիրոջ տունը, իսկ ինքը սպասում էր դրսում, երկար ժամանակ սպասում էր: Ուսուցիչը վերադարձավ մռայլ ու թնաթափ: Առանց շուրջը նայելու, նա բռնեց դպրոցի ճանապարհը: Գնում էին լուռ և միայն դպրոցի մոտ հրաժեշտ տալիս՝ ուսուցիչը իր մեծ ափը նրա գլխին դնելով, ասաց.

— Դու պետք է անպատճառ նկարել սովորես: Ես խնդրեցի, որպեսզի քեզ օգնեն, բայց ոչինչ չստացվեց, Ստեփա՛ն, իսկ ես դրամ չունեմ:

Ստեփանը հետագայում քաղաք գնաց, բայց գեղա-

նկարչություն չսովորեց: Նա գործարանում բանվոր դարձավ, իսկ նկարելու երազանքը մնաց հեռու-հեռվում, ինչպես մանկությունը՝ իր ուրախություններով ու զվարճություններով:

Իսկ ի՞նչ կլինի, եթե... եթե այդ առանձնատանը... Եվ Ստեփան Եգորովիչը գործարան վերադառնալով իր որոշման մասին պատմեց ընկերներին:

— Լավ կլինի,— քաջալերեցին բանվորները և որոշեցին գնալ Սմոլնի՝ Լենինի մոտ:



— Հիմա այնպիսի օրեր են... մի՞թե դրա ժամանակն է,— զարմացավ Լենինի աշխատասենյակի մոտ հերթապահող ընկերը:— Վլադիմիր Իլյիչը այժմ անհետաձգելի գործեր ունի, պետք է ինքներդ հասկանաք, թե հիմա որն է ավելի կարևորը. ճակատը, սովի դեմ պայքարելը... ճիշտ ժամանակին չեք եկել:

Ստեփան Եգորովիչը մռայլվեց, բայց չհուսահատվեց:

— Այնուամենայնիվ դուք զեկուցեք Իլյիչին,— ասաց նա:

— Այդ ո՞ւմ հետ եք այդպես տաք-տաք վիճում,— լսվեց Լենինի ձայնը, և Վլադիմիր Իլյիչը դուրս եկավ ընդունարան:

— Պուտիլովցիներ են եկել,— պատասխանեց հերթապահը:

— Բարև՛ ձեզ, ընկերնե՛ր,— Վլադիմիր Իլյիչը սեղմեց բանվորների ձեռքը,— ինչի՞ մասին եք վիճում:

— Մենք մի ուրիշ անգամ կգանք,— ասաց Ստեփան Եգորովիչը,— ներեցե՛ք մեզ, Վլադիմի՛ր Իլյիչ:

Հերթապահը սկսեց բացատրել, որ պուտիլովցիները որոշել են բանվորների երեխաների համար գեղարվեստական ստուդիա բացել, բայց չեն մտածել, որ հիմա դրա ժամանակը չէ:

— Ինչո՞ւ ժամանակը չէ,— նրան ընդհատեց Վլադիմիր Իլյիչը,— ամենաիսկական ժամանակն է: Նրանք ուզում են սեփական մտավորականությունն ունենալ, սեփական նկարիչները: Բանվորները արյուն են թափում, որպեսզի արվեստը ժողովրդին պատկանի: Ձեր կարծիքով ուրիշ էլ ե՞րբ է դրա ժամանակը:

Լենինը լայնորեն բացեց իր աշխատասենյակի դուռը և ասաց.

— Նե՛րս եկեք, ընկերնե՛ր:

Բանվորներին նստեցնելով, Վլադիմիր Իլյիչը խնդրեց մանրամասն պատմել, թե ի՞նչ է հարկավոր ստուդիա կազմակերպելու համար: Ուրախացած Ստեփան Եգորովիչը սկսեց մեկ առ մեկ թվել: Լենինը ուշադիր լսում էր, իսկ երբ Ստեփան Եգորովիչը ավարտեց, Լենինը հավանություն տվեց:

— Հաջողություն եմ ցանկանում,— ասաց նա,— հիանալի որոշում է, ուղղակի հրաշալի է:

*Թարգմ. Յ. ՍԱՐԴԱՐՅԱՆԻ*

# Զանգակներ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Շիրակի դաշտն եմ հիշում,
Քրտնած ձիեր ու սահնակ,
Ձմռան ճերմակ մշուշում,
Մշուշի մեջ՝ մենք մենակ:

Զանգակներն են կրնգում
Պաղ, սպիտակ դաշտի մեջ,
Եվ մանկական իմ հոգում
Հյուսում հեքիաթն իրենց պերճ:

Նժույգների զավակից
Գոլորշին է բարձրանում,
Եվ մշուշից կրկնակի
Մառախուղն է թանձրանում:

Սլանում են ու փնչում
Նժույգները հովատակ,
Զանգակներն են ղողանջում
Մշուշի մեջ սպիտակ:

Հանկարծ մշուշը ցնդեց
Եվ Արագածն երևաց,
Ու դաշտերին արծաթե
Ձմռան արևը ցոլաց:

Եվ ինձ, որ փոքր էի դեռ,
Մուշտակի մեջ իմ եղբոր՝
Դաշտերի մեջ արծաթե
Կախարդեցին այնպես խոր՝

Ե՛վ ղողանջները այն պաղ՝
Մենության մեջ դաշտերի,
Ե՛վ սպիտակ այն ճամփան,
Ե՛վ ռռոցը գայլերի...

# ԽԱՌԱԿՈՆԻՍԸ ՊԱՇՏՊԱՆՎՈՒՄ Է

(«Երկրորդ կյանք» գրքից)

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Դո՜մ...դո՜մ...դո՜մ...

— Վո՜ւյ, վե՛ր կաց, Հայե՛ր, թուրքերը գյուղն են մտել, մեր դուռն են ծեծում: Եկել են, որ մեզ կոտորեն,— տագնապով ասաց հորաքույր Ալմաստը:

Ես տեղից վեր թռա, շորերս հագա և պատրաստվեցի կոտորվելու:

Հորաքույր Ալմաստը՝ երեսը խաչակնքելով գնաց դուռը բաց արեց:

Պարզվեց, որ թուրքերը գյուղ չեն մտել: Արկերի պայթյուններն էին մեզ թվացել դռան թակոց: Ուրեմն Խառակոնիսը դիմադրում է քարդարարներին:

Այս միտքն ինձ այնքան ոգևորեց, որ ես վախը մոռացած նետվեցի դուրս, հորաքույր Ալմաստը՝ ետևիցս, հազար անեծք տեղալով իմ գլխին.

— Ո՞ւր ես գնում, կարկտի պես թափվող գնդակների տակ...

Բայց ես թպրտալով նրա ձեռքից պոկվեցի ու փախա: Իմ մեջ կար բնազդական մի համոզմունք, եթե թուրքերը մտնեն Խառակոնիս, ինձ էլ բոլորի հետ կմորթեն, ավելի լավ չէ՞ մեռնել կռվի ժամանակ պատահական գնդակից:

Մեր գյուղի վրա գնդակների կարկուտ էր տեղում, ճարճատող մահացու կարկուտ: Կարծես մի հեքիաթական հսկա իր ոըլոտ շորերը թափ էր տալիս մի հսկա թոնրի մեջ... Մեջընդմեջ պայթում էին թնդանոթի արկերը՝ դիպչելով ժամտան բլուրին և հաճախ փշրելով գերեզմանաքարերը: Ականջներիս տակ մեղուների պես բզզալով անցնում էին գնդակները, բայց ես վազում էի դեպի գերեզմանոց: Ես ուզում էի վերջին անգամ տեսնել մորս հողաթումբը:

Մորս հողաթմբի մոտ մի ուրիշ գերեզմանաքարի վրա նստած էր Պզկի Պողոսը: Երբ ես մոտեցա, նրա նեղ ցավոտ աչքերի մեջ արցունք երևաց.

— Ա՜խ, ա՜խ, Հայաստա՛ն տղա, հազա՜ր ափսոս, մուրազս փորումս մնաց:

Ես հասկացա նրա մուրազը, նա ուզում էր ինձ ուղարկել Էջմիածին կամ Թիֆլիս ուսում առնելու:

— Քեռի՛ Պողոս,— պատասխանեցի ես:— Այլևս ինչի՞ս է պետք Էջմիածին կամ Թիֆլիս գնալս, երբ Խառակոնիսը չի լինի...

— Կլինի՜,— բռունցքը դաշտի կողմը թափահարելով, ասաց քեռի Պողոսը:— Հինգ տարի հետո, հիսուն տարի հետո, հինգ հարյուր տարի հետո կլինի Խառակոնիսը Մարաժոյի հանդում: Մենք չենք լինի, մեր թոռները, մեր թոռան թոռները կլինեն: Թուրքը չի կարող մեր Խառակոնիսը բնաջնջել: Խառակոնիսը կռվել գիտի:

— Թուրքերը շա՞տ են, քեռի՛ Պողոս:

— Շիրինի ասելով՝ շատ են: Կանոնավոր զորքը և քրդական աշիրաթները մեկտեղ՝ հազար հոգի կլինեն: Վաղ առավոտյան ավելի շատ էին թվում: Խորամանկություն էին արել, հավաքել էին Արչակի բոլոր տավարն ու ոչխարը զորքի հետ միասին քշում էին դեպի Խառակոնիս, որ մերոնց աչքին այդ բոլորը զորք երևա ու մերոնք վախենան կռվելուց, անձնատուր լինեն: Մերոնք չվախեցան: Երեք հարյուր հրացան, որ միանգամից համազարկ տվին, անասունները ետ փախան ընկան ծովափի ուռուտը, մնաց միայն զորքը: Էդ էլ շատ է: Շիրինի ասելով հազար հոգի են:

— Նրանք հազար, մենք երեք հարյուր...

— Բայց մեր դիրքերն ամուր են, Հայաստա՛ն տղա,— բացատրեց քեռի Պողոսը:— Մեր դիրքերն անառիկ են: Մերոնք մտել են հողի հաստ պատերով շրջապատված գյուղամերձ բաղչաները, նրանք բաց դաշտի վրա են կռվում: Եթե մենք ունենայինք բավարար չափով փամփուշտ, կդիմանայինք, մինչև կամավորական բանակը վրա հասներ:

— Բա ո՞նց կլինի, քեռի՛ Պողոս:

— Չգիտեմ, բալա՛ ջան,— դառնորեն հառաչեց քեռի Պողոսը:— Ո՛չ աչքի լույս ունեմ, ո՛չ հրացան, որ մասնակցեմ էս սրբազան ճակատամարտին:

— Ես աչքի լույս ունեմ, բայց հրացան չունեմ,— հառաչեցի նաև ես:

Ճակատամարտը գնալով թեժանում էր:

Գնդակների ճարճատյունից և արկերի պայթյունից ականջ էր խլանում: Թուրքերի կողմից կարկտի պես գնդակ էր գալիս, մերոնք սակավ էին պատասխանում: Փամփուշտը խնայում էին: Պողոսը բացատրեց, որ մերոնց հրամայված է կրակել միայն լավ նշան առնելով, ամեն մի գնդակը մի թուրքի կյանք արժեցնելով:

Գերեզմանոցից երևում էին Մկրտչենց Գյուլիզարի տան տանիքը, որի վրա ամենից ավելի շատ էր գնդակ ընկնում: Պողոսը վեր կացավ և քայլերն ուղղեց այն կողմը:

— Ջահլաս գնաց մահվան սպասելով,— ասաց նա ինքնիրեն:— Գնամ պառկեմ այնտեղ, գնդակների տակ: Ինչ որ գալու է, թող շուտ գա:

Ես ուզեցի նրան ետ պահել այդ անմիտ քայլից,



բայց նա ասաց, որ ես չհամարձակվեմ իրեն ո՛չ խանգարել, ո՛չ հետևել: Նա կարգադրեց, որ ես մնամ կենդանի և նկարագրեմ Խառակոնիսի ճակատամարտը:

Պողոսը երերալով գնաց, բարձրացավ տանիքը և նստեց կարկուտի պես տեղացող գնդակների տակ: Ես տագնապով հետևում էի նրա վիճակին: Հիմա կդիպչի նրան գնդակը, հիմա նա կքռնի կուրծքը, կընկնի մեջքի վրա, հիմա նա գլուխը կթեքի կրծքին և կընկնի բերանքսիվայր. հիմա կսպանվի «Խառակոնիսա կիսագրագետ իմաստունը», ինչպես նրան մեր գյուղացիք էին անվանում, և իմ բարերարը... Ոչ մի գնդակ նրան չէր դիպչում, և քեռի Պողոսը միայն իր ուսերն էր թոթվում զարմանքից:

Ես կռացա մորս գերեզմանին և մտքումս խոսում էի նրա հետ.

— Մա՛, դու ամեն օր բարձրանում էիր տանիքը և ասում էիր. «Ռուսները գալիս են»: Ո՞ւր են ռուսները: Ինչո՞ւ չեկան...

Մի քիչ հետո քեռի Պողոսը ձեռքը թափ տվեց, կտուրից իջավ, երերալով եկավ, նստեց իր նախկին տեղը, ասաց.

— Մահվանը հեռվից սպասելն ավելի հեշտ է, քան մոտիկից:

Մի քանի արկ իրար ետևից դիպան դպրոցի պատին, և տանիքից մուխ բարձրացավ: Դպրոցի կողմից մեզ մոտեցավ Թեֆֆիկը, գունատ, լայն բացված աչքերով, առանց ֆեսի: Նա լաց էր լինում.

— Թող անիծված լինեն իմ բարբարոս ցեղակիցները: Նրանք դպրոցը ռմբակոծելով այրեցին:

— Լաց մի՛ լինի, Թեֆֆի՛կ,— ասաց Պողոսը:— Քեզ ի՞նչ, որ քո ցեղակիցները հայի դպրոցն այրեցին:

— Ես գիտեմ, որ խառակոնիսցիք ինձ կսպանեն,— արցունքները սրբելով շարունակեց Թեֆֆիկը,— բայց ես կուզենայի ձեզ հավատացնել, որ ես հավատարիմ եմ Խառակոնիսում երկու տարի կերած աղուհացին:

— Ի՞նչ անեմ, Թեֆֆի՛կ,— հառաչեց Պողոսը:— Ես այն գիտեմ, որ քեզ վրա ձեռք բարձրացնող հայը



հայ չի լինի, այլ՝ թուրք: Մի՛ վախենա, քանի Պզկանց Պողոսը կենդանի է, քո մազին դիպչող չկա:

Ես զգում էի, որ Պողոսն իր խոսքերին այնքան էլ չի հավատում: Նա միայն ուզում է հանգստացնել այդ ազնիվ և անմեղ երիտասարդին: Թեֆֆիկը նույնպես Պողոսի խոսքերն այդպես էր ընկալում և տխրությամբ թոթվում էր ուսերը:

Հրացանային համազարկերը մեկ ուժեղանում էին, մեկ թուլանում: Մենք վեր կացանք իմ մոր գերեզմանի մոտից ու կուզեկուզ անցանք ժամտան պատի տակ այն կարմիր քարի մոտ, որ մի ժամանակ համարվում էր Քուչակ Նահապետի գերեզման:

Դպրոցի կրակը հանգել էր: Հողի տանիքը փուլ էր եկել կրակի վրա և հանգցրել: Միայն բարակ ծուխ էր բարձրանում:

Կարմիր քարի մոտ էր հավաքվել Խառակոնիսի ծերակույտը՝ պարոն Շիրինի գլխավորությամբ: Այնտեղ մենք իմացանք, որ առավոտից մինչև հիմա թուրքերից սպանված է քսան մարդ, մեզանից՝ միայն մեկը, իմ դասընկեր Օգսեն Ավետիսյանի հայրը: Նա իր դիրքից նշան է բռնում թուրքին, կրակում է, գլուխը դիրքից հանում, որ տեսնի՝ իր գնդակը կպել է, թե ոչ: Հենց այդ պահին էլ կարկտի պես տեղացող գնդակներից մեկը դիպչում է նրա ճակատին:

«Ուրեմն Օգսենն էլ ինձ նման որբացավ»— հառաչեցի ես մտքումս:

— Ասել է թե երեք օր կարող եք դիմադրել,— ասաց ռես Խաչոն, ըստ երևույթին շարունակելով մինչև այդ եղած վեճը:

Շիրինը բորբոքված պատասխանեց.

— Երեք օր էլ, տաս օր էլ, եթե կռվենք մինչև վերջին փամփուշտը: Հետո ի՞նչ կլինի: Թշնամին կմտնի գյուղ և բոլորիս էլ հավերի պես կմորթի: Մենք պետք է գյուղից հեռանանք հենց այս գիշեր՝ հետներս ունենալով կրակի որոշ պաշար, որ կռվելով հասնենք մինչև Վան:

— Ուրեմն Խառակոնի՞սը...— բարձրաձայն հառաչեց ռես Պետրոսը:

— Խառակոնիսը կավերեն,— ասաց պարոն Շիրինը:— Խառակոնիսն այլևս չի լինի: Մենք պետք է փրկենք մարդկանց: Մարդիկ ավելի կարևոր են, քան թե նրանց Խառակոնիսը:

Ի վերջո բոլորը համաձայնեցին Շիրինի հետ և տեղնուտեղը մշակեցին նահանջի ճանապարհներն ու բնույթը: Ուղիղ գիշերվա կեսին զինված ուժերի պաշտպանության տակ ջրաղացի նեղ ճանապարհով գյուղից դուրս կգան տասներկուսից վաթսուն տարեկան տղամարդիկ, տասներկուսից մինչև քառասունհինգ տարեկան կանայք: Մնացած ամբողջ ազգաբնակչությունը՝ ծերերն ու երեխաները պիտի մնան գյուղում և դիմանան զրկանքներին, մինչև որ աստված մի դուռ բաց կանի:

— Ես թողնում եմ նաև իմ կնոջը, որ քառասուն տարեկան հազիվ լինի,— ասաց պարոն Շիրինը:— Ես իմ կնոջն էլ չեմ վերցնում ինձ հետ, որ ուրիշները չասեն, թե ես իմ դիրքը չարաշահում եմ:

— Այդ ի՞նչ խոսք է, պարո՛ն Շիրին,— առարկեցին ամեն կողմից Խառակոնիսի մեծամեծները:

— Դու իրավունք ունես հետդ վերցնելու ամբողջ ընտանիքդ...

— Դու օրենքից ազատ ես...

— Դարտակ խոսքեր են,— բարկացավ պարոն Շիրինը:— Եթե ես ինքս ինձ օրենքից ազատ պահեմ, այլևս չեմ կարողանա ոչ ոքի ենթարկել ինձ: Եթե այս ճակատագրական պահին մարդիկ սկսեն իմ ու քոնն անել, եթե նրանք մազաչափ անգամ կասկածեն իրենց ղեկավարի կարգապահության վրա, բոլորս միանգամայն կորած ենք: Ընտրել եք ինձ ղեկավար, թողեք վարվեմ ըստ իմ հասկացողության: Ես գնացի դիրքերը: Իսկ դուք ցրվեցեք գյուղում և ժողովրդին բացատրեք նահանջի ժամը, ճանապարհն ու կանոնները: Թող բոլորը ջրաղացի ճանապարհով դուրս գան Գյադուկի կողմը...

Դիրքերի կողմից հևասպառ վրա հասավ Հովոն և ասաց.

— Պարո՛ն Շիրին, ինձ ուղարկեցին քեզ հայտնելու, որ մերոնք ճլճլուկների մեջ պառկեցրին ևս տաս թուրք: Դարձավ ընդամենը երեսուն թուրք:

— Իսկ մերոնցից ո՞վ ընկավ,— տագնապով հարցրեց պարոն Շիրինը:

— Ոչ ոք,— պատասխանեց Հովոն:— Ավետիսից բացի, ոչ ոք: Ավետիսն էլ սպանվեց իր անզգուշությունից:

— Ապրե՛ս, Հովակի՛մ,— ասաց պարոն Շիրինը:— Ես հետևում եմ քո կռվին: Լավ ես կռվում:

Հովոն շեղակի ժպտաց, ուզում էր ասել, թե ուրիշ

ի՞նչ կերպ կարող էր լինել: Շիրինը գնաց՝ հրամայելով Հովոյին մի փոքր հանգստանալ ու վերադառնալ դիրքերը:

Հովոն մոտեցավ ինձ և ձեռքը դրեց ուսիս.

— Ո՞նց ես, Հայե՛ր ջան:

— Ո՞նց պիտի լինեմ... Բոլորը կռվում են, իսկ ես հրացան չունեմ, որ կռվեմ:

Հովոն ինձ գրկեց ու սեղմեց իր փամփուշտակալին.

— Դարդ մի՛ անի, ես կռվում եմ իմ ու քո տեղակ: Մի անգամ կրակում եմ, ասում եմ՝ սա իմ կողմից էր, մյուս անգամ կրակում եմ, ասում եմ՝ սա Հայաստանի կողմից էր: Եթե ես տաս թշնամի սպանեմ, հաշվիր, թե հինգը դու ես սպանել: Դու պստիկ ես, դու մի՛ կռվի: Դու կյանքդ պահպանի՛ր, որ ապրես իմ և քո տեղակ...

Հովոն Թեֆֆիկին աչքով արեց ու գնաց:

Նրանք իրար այնքան նման էին՝ Թեֆֆիկն ու Հովոն: Երկուսն էլ բարալիկ, բարձրահասակ, երկուսն էլ սև նշաձև աչքերով, երկուսն էլ նոր ծլած բեղերով:

Թեֆֆիկը հայերեն ազատ խոսում էր և ասաց.

— Ի՜նչ լավ տղա է Հովոն... Երանի եղբայրս լիներ:

— Մենք շատ բախտավոր կապրեինք, Թեֆֆի՛կ էֆենդի,— ասացի ես,— եթե բոլոր թուրքերը քեզ նման լինեին, բոլոր հայերը՝ Հովոյի նման:

Ես վերադարձա տուն, որ հորաքույր Ալմաստին հայտնեմ մեր առաջիկա բաժանման լուրը: Նա արդեն ամեն ինչ գիտեր և ջուր էր տաքացրել, որ ինձ լողացնի: Լողացնելուց առաջ հորաքույր Ալմոն իմ գլխին թափեց անեծքների այն մասը, որ չէր հասցրել առավոտյան ուղարկել իմ ետևից: Նա ամբողջ օրը գնդակների կարկտի տակ թուրքերին անիծելով՝ ինձ որոնել էր և չէր գտել: Հասել էր մինչև անգամ դիրքերը և ականատես եղել Օգսենի հոր սպանությանը: Լողացնելուց հետո հորաքույր Ալմաստը իմ հագուստի պատռվածքները կարկատեց, ինձ համար ճանապարհի պաշար կապեց, այտերս համբուրեց ու թքեց վրաս չար աչքերի դեմ ինձ ապահովելու համար:

Նստած երեքով իրար էինք նայում լուռ ու մունջ: Երանուհին իր խաժ երազուն աչքերով զննում էր ինձ. կարծես ուզում էր ստուգել, թե ես ինչ նյութից եմ սարքված, կդիմանա՞մ արդյոք անհայտ փորձություններին: Ես երբեք չեմ մոռանա տագնապով և քնքշությամբ լեցուն այդ հայացքը: Երանուհուն մենք սիրում էինք ամբողջ ընտանիքով: Չնայած աղքատ էինք, բայց մայրս նրան հագցնում էր մուդուրի թոռան պես: Շատ բան էլ պետք չէր Երանուհուն հագցնելու համար: Վանում սպիտակ ավելով ձեռք բերած աղջկական հին հագուստի մեջ նա շողշողում էր ինչպես լեռնային կակաչ:

Մեռնելուց առաջ մայրս ինձ ասաց.

— Հայաստա՛ն, Երանուհուն թողնում եմ քեզ: Պահի՛ր մեծացրու, հասցրո՛ւ իր բախտին...

Իսկ ես հիմա Երանուհուն թողնում եմ Ալմաստ հորաքույրի հետ ու հեռանում չգիտեմ, թե ուր: Կա՞ սրանից մեծ վիշտ մարդու համար: Սրանից ավելի դաժան ճակատագիր:

Դրսում հրաձգությունը մեկ ուժեղանում էր, մեկ թուլանում: Բայց ես այլևս չէի վախենում: Ես գիտեի, որ մերոնք տաս օր էլ կարող են դիմադրել և պաշտպանել գյուղը առանց որևէ զոհ տալու:

Ես համակված էի իմ հարազատներից բաժանվելու, գուցե ընդմի՞շտ բաժանվելու, խոհերով: Շուտով մութը կընկնի, ես նրանց կթողնեմ անհայտության մեջ և ինքս էլ կգնամ դեպի անհայտությունը:

Երանուհին շարունակում էր իր խաժ աչքերով զննել ինձ: Իմ գլխում անդադար հնչում էր թուրք երիտասարդ ասկյարների անցյալ տարվա երգը.

«Մի՛ լար, ի՛մ մայրիկ, ճամփեն չգիտեմ.
Գուցե աշխարհում ես քեզ հանդիպեմ»...



# ԻՆՉ ԱՐԵՑԻՆ ՄԱԿԱՆՈՒՆՆԵՐԸ

*ԳՈՒԼԸՆԴԵՅ*

*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱՐԱՅԱՆԻ*

Մի անգամ դասամիջոցին ներս ընկավ Սաշկա Պիրաժկովը ու բղավեց.

— Լսեցե՛ք վերջին լուրերը. Նիկոլայ Իվանովիչը ցուցակագրում է արշավի գնալ ցանկացողներին:

Լսելուն պես վազեցինք ուսուցչանոց: Վաղուց երազում էինք Նիկոլայ Իվանովիչի հետ բարձրանալ լեռները...

Ամենից առաջ ուսուցչանոց ընկավ Մարինկա Շչուկինը: Կանգնեց Նիկոլայ Իվանովիչի դեմ դիմաց, բերանը բացեց, բայց ոչինչ ասել չկարողացավ: Շընչառությունը դավաճանեց: Ի դեպ, հենց դրա համար էլ նա ստացավ «Զկնիկ» մականունը:

— Ի՞նչ է պատահել,— ժըպտալով հարցրեց Նիկոլայ Իվանովիչը:

— Ուզում ենք արշավի գընալ,— բղավեցինք մենք,— ցուցակագրե՛ք մեզ:

— Բարի: Միայն՝ հերթով,— խնդրեց Նիկոլայ Իվանովիչը:

— Իսկ ի՞նչ հերթ կարող է լինել այստեղ, եթե ամեն մեկը մյուսից առաջ է ուզում գրվել...

— Քանի որ բոլորդ էլ ուզում եք առաջինը ցուցակագրըվել, թող ամեն մեկը գրի իր ընկերոջ անունը,— ասաց Նիկոլայ Իվանովիչը:

Անմիջապես տիրեց մեռելային լռություն: Բոլորի տրամադրությունը միանգամից ընկավ:

— Հը՞, ի՞նչ պատահեց, ինչո՞ւ լռեցիք,— զարմացավ Նիկոլայ Իվանովիչը:— Դո՛ւ ասա,— նա մատով ցույց տվեց ինձ:

— Բանանը ուզում է,— առանց խանդավառության արտասանեցի ես:

— Եղբայրիկը նույնպես,— ավելացրեց պապանձված Զըկնիկը:

— Զամբեզին էլ,— մեջ ընկավ Գերեզմանը:

Նիկոլայ Իվանովիչը մռայլվեց:

— Քանի՞-քանի անգամ ասել եմ ձեզ. մի՛ գործածեք այդ մականունները...

Իսկապես, նա այդ մասին հարյուր անգամ ասել էր, մյուս ուսուցիչներն էլ, նույնիսկ ծնողներին էին դպրոց կանչել.,.

— Իսկ գիտե՞ք, որ ես կարող եմ մերժել ձեր ցանկությունը, արշավի չտանել հենց այդ բանի համար,— շարունակեց Նիկոլայ Իվանովիչը:

— Էլ չենք անի, վերջ,— հառաչեցինք մենք:

— Հետաքրքիր է, իսկ ինչպե՞ս կկանչեք մեկդ մյուսին, եթե...

— Անուն, հայրանունով,— վրա բերեց Բանանը:

— Եվ անպայման «Դուք»-ով,— ավելացրեց Գերեզմանը:

— Իհարկե, դուք հիմա պատրաստ եք նույնիսկ խոսք տալ, որ բոլորդ էլ բացարձակ գերազանցիկներ կլինեք ուսման մեջ,— ժպտաց Նիկոլայ Իվանովիչը:

— Եվ կլինենք,— վրա բերինք մենք:

— Ձեր երդումները հարկավոր չեն: Ես ձեզ արշավի կտանեմ առանց որևէ պայմանի: Բայց խոստովանեցեք ազնվորեն. մի՞թե ամոթ չէ այդպիսի օտարոտի, վայրենի մականուններով կանչել միմյանց

— Ամոթ չէ,— ազնվորեն խոստովանեցինք մենք:

— Եվ դուք կարող եք բավարարվե՞լ դրանցով ու չոլա գնալ առանց այն անունների, որ ձեզ տվել են ձեր ծնողնե՞րը:

— Կարո՛ղ ենք,— բղավեցինք մենք:— Ի՞նչ հարկավոր են անունները... Նրանք միայն շփոթություն են առաջացնում: Դասարանում երկու Վիտյա կա, երեք Մարինա, չորս Ալյոշա, այնինչ Բանանը մեկն է, Գերեզմանը՝ նույնպես:

— Օ՜հ, լավ,— ասաց Նիկոլայ Իվանովիչը,— եթե ձեզ այդքան դուր են գալիս մականունները, խնդրեմ: Միայն զգուշացնում եմ՝ արշավի գնալիս միմյանց կդիմեք միայն մականուններով: Պայմանավորվեցի՞նք:

— Պայմանավորվեցինք,— գոհունակությամբ բղավեցինք մենք:

Այն ժամանակ մենք չէինք էլ կարծում, թե ինչ դավադրություն է պատրաստում Նիկոլայ Իվանովիչը:

Լեռներում և՛ հաճելի էր, և՛ վտանգավոր: Վերջին լեռնանցքը հաղթահարելուց առաջ, երբ մենք արդեն հոգնել էինք և դըժվարանում էինք բարձրանալ, Նիկոլայ Իվանովիչը առաջարկեց. պայուսակները ուղարկել մեզնից առաջ՝ փոստով: Նա բերեց մի երկար պարկ, որի վրա նախօրոք գրված էր հասցեն: Պարկի մեջ տեղավորեցինք մեր պայուսակները: Երեք օր անց, քաղցած ու հոգնած հասանք ծովափ: Նիկոլայ Իվանովիչը անդորրագիրը հանձնեց մեզ և ինքը անհետացավ: Փոստատուն գնալիս տեղատարափ անձրև էր և մենք մի լավ թրջվեցինք:

Փոստատանը անմիջապես նկատեցինք մեր պարկը: Հեռվից էլ կարելի էր կարդալ նրա վրա գրված հասցեն. «հանձնել» համառոտ մակագրությունը, ապա մեր բոլորի... մականունները՝ սկսած Բրեդեն-Բդատերից, վերջացրած Գերեզմանով: ...Եղբայրիկը մեկնեց իր անդորրագիրն ու ասաց.— Ահա այն պարկն ի՛մն է, խնդրեմ...

Փոստատան ծառայողն անդորրագիրը երկար շուռ ու մուռ տալուց հետո, կասկածանքով հարցրեց.

— Իսկ դու ո՞վ ես:

— Եղբայրիկն եմ,— ասացնա:—Այնտեղ պարզ գրված է... վերևից երրորդը:

— Դա քո ազգանո՞ւնն է,— զարմացավ ծառայողը:

— Մոտավորապես նման մի բան:

— Ի՞նչ է նշանակում «մոտավորապես»: Փաստաթղթեր ունե՞ս:

— Ո՛չ:

— Հապա ո՞ւմ Եղբայրիկն ես:

— Իմ,— ասաց Քույրիկը:

— Քո ազգանունն էլ է՞ Եղբայրիկ:

— Ո՛չ,— ասաց Քույրիկը,— ես Քույրիկն եմ:

— Ոչինչ չեմ հասկանում. դու տղա ե՞ս, թե՞ աղջիկ:

— Իսկ դուք մի՞թե չեք տեսնում,— վիրավորվեց Քույրիկը,— ես տղա եմ:

— Բայց տղան ինչպե՞ս կարող է Քույրիկ կոչվել:

—՝Դե մենք հորեղբոր տղաներ ենք,— բացատրեց Եղբայրիկը:

— Հա՛, հիմա արդեն պարզ է,— ասաց ծառայողը, թեև պարզ էր, որ նրա համար ոչինչ պարզ չէր:

— Ո՞վ կարող է հաստատել, որ դու Քույրիկն ես:

— Ես կարող եմ, ես՝ Բանանըս,— մեջ մտավ Բանանը:

— Իսկ դու այդ ի՞նչ տեսակ պտուղ ես:

— Ես Բանանն եմ,—գոռոզաբար ասաց Բանանը:

— Փաստաթղթեր ունե՞ս: Ինչո՞վ կապացուցես, որ դու...

— Այստեղ ապացուցելու ի՞նչ կա: Բոլորն էլ գիտեն, որ ես Բանանն եմ:

Եվ նա առաջ մեկնեց անձրևից խունացած ու գրեթե բոլորովին քքրված «Բնության պատանի բարեկամ» ընկերության իր անդամատոմսը:



— Նոսով Վասյա,— կարդաց փոստատան ծառայողը,— դու ի՞նչ է, ուրիշի ազգանվան տակ ե՞ս զբոսնում ու զվարճանում, հա՞, մինչդեռ այստեղ սահմանային գոտի է:

— Բոլորի՛ համար էլ կարող եմ երաշխավորել,— հանկարծ բղավեց տառապանքից և անռոչությունից մոլեգնած Գերեզմանը:

— Ահա մեկն էլ,— կասկածանքով ասաց ծառայողը,— բայց մի իմանամ, թե դո՞ւ ով ես...

— Ես Գերեզմանն եմ,— չարագուշակ ասաց Գերեզմանը:

Ծառայողը սփրթնեց և, փակելով լուսամուտը, խնդրեց սպասել: Բարակ տախտակե միջնապատի ետևից լսվեց հեռախոսային ցածր խոսակցություն:

— Ընկե՛ր պետ, ավանում հայտնվել են կասկածելի տիպեր: Փաստաթղթեր չունեն... Կարծում եմ այն կողմից են... Իսկ խմբի ղեկավարը ինչ-որ Զամբեզի է կոչվում:

— Գործներս լավ չեն,— ասացի ես:— Այդ էր պակաս, որ ձերբակալվեինք որպես լրտեսներ: Փախչենք, քանի ուշ չէ:

Փորձեցինք գտնել Նիկոլայ Իվանովիչին, սակայն իզուր. ոչ մի տեղ չգտանք նրան: Վհատությունը տիրեց բոլորիս:

— Ոչինչ,— ցրտից ու վախից դողդողալով հազիվ արտաբերեց Զկնիկը,— մի կերպ տակից դուրս կգանք, հարկավոր է միայն մտածել:

— Էլ ե՞րբ մտածես,— բորբոքվեց Բանանը,— հիմա որտեղ որ է մեզ կձերբակալեն: Այդ քեռին արդեն իմաց տվեց սահմանապահներին:

— Գուցե դա էլ հենց ելքն է,— վրա բերեց Զկնիկը,— գոնե կկերակրեն, թե չէ քաղցից փորներս վեց-վեց է անում:

Բոլորովին հուսահատված էինք, երբ մեկ էլ որտեղից-որտեղ հայտնվեց Նիկոլայ Իվանովիչը:

— Նիկոլա՜յ Իվանովիչ,— բացականչեցինք մենք, և այլես ոչինչ չկարողացանք ավելացնել: Նա ամեն ինչ հասկացավ և մեզ տարավ այն տնակը, որտեղ մեզ սպասում էր տաք ընթրիքը:

Այդ օրվանից մեզանից ոչ մեկը մյուսին մականունով չէր դիմում, նույնիսկ զայրույթի պահին:

*Թարգմ. ՎԱՆԻԿ ՍԱՄՎԵԼՅԱՆԸ*



# ԾԱՂԿՈՒՆ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Մի թագավոր ծաղկեցրել, շեն էր արել իր երկիրը, և ահա ծերացել էր ու պիտի մահանար: Որդիներից որի՞ն դարձնի թագաժառանգ, մտածում էր գառամյալ թագավորը, որ տերությունը դարձյալ ծաղկուն պահի իր մահից հետո: Կանչեց իր բոլոր որդիներին, վերցրեց զանազան և ամեն տեսակի ծաղկի սերմեր և բաժանեց նրանց:

— Որդինե՛ր,— ասաց ծեր թագավորը,— հողե՛ր ընտրեք ձեզ համար, մշակե՛ք հողը, պարտեզնե՛ր շինե՛ք և առե՛ք այս սերմն ու ցանե՛ք: Խնամեք և աճեցրեք ծաղիկնե՛ր: Ում պարտեզը ճոխ լինի, հողը՝ խնամած, ում ծաղիկներն ավելի գեղեցիկ լինեն, նա էլ կլինի երկրի թագավորը իմ մահից հետո: Որովհետև, լսե՛ք, այդպես եմ որոշել-ընտրել, թե ով է ձեզնից առավել ազնիվը, բարեխիղճն ու աշխատասերը:

Որդիները վերցրին սերմն ու գնացին: Ընտրեցին հողամասեր, խնամեցին հողը, պարտեզներ շինեցին, ջուր բերին առուներով հեռու տեղերից և ամեն մեկը սկսեց խնամել իր ծաղկանոցը:

Գարնանը ելավ թագավորը իր պալատականների հետ, ժողովրդի և օտար երկրների դեսպանների մեծ բազմությամբ գնաց պարտեզները նայելու և թագաժառանգը որոշելու:

Գնաց, ահա մոտեցավ ավագ որդու պարտեզին: Ի՜նչ պարտեզ, իսկական դրախտ: Ամեն գույնի, ամեն բուրմունքի ծաղիկներ ծով էին կապել պարտեզում, բայց թագավորը մռայլվեց և անխոս առաջ գնաց:

Պալատականները, դեսպանները, ամենքը զարմացան և լուռ գնացին թագավորի ետևից:

Ահա մյուս պարտեզը, ավելի ճոխ, ավելի շքեղ, հողը մշակված էր մեծագույն ջանասիրությամբ, ծաղիկներն աճեցված էին այնքա՜ն հմուտ և այնքա՜ն փարթամ, որ թագավորի լավագույն այգեպանն անգամ չէր անի: Բայց թագավորն ավելի մռայլվեց ու գնաց առաջ:

Ահա մյուս պարտեզը: Ի՜նչ պարտեզ, ի՜նչ ծաղկանոց, ի՜նչ շքեղություն... Երփներանգ, բազմերանգ բուրումնալի ծաղիկներից օդն անգամ ներկվել էր գույնզգույն:

Բայց հայրը ավելի մռայլվեց և գնաց առաջ: Նրա հետ եղածները անխոս գնացին իր հետևից:

Քիչ անց նրանց առջև բացվեց հինգերորդ որդու պարտեզը. բոլորը հիացմունքից պապանձվեցին: Սա գերազանց էր մյուս տեսածներից: Ծաղիկների գույներից օդում ծիածան էր կապել, բուրմունքից մարդկանց գլուխը պտտվում էր:

## Ճուտը և կճեպը

ՎԱՐԱԶԴԱՏ ԲԱԳՐԵՎԱՆԴՑԻ

Հենց որ ձվից
Եկավ ճուտը,
Ու տարբերեց
Ջուրն ու կուտը,
Ոտքով խփեց
Իր կճեպին.
— Ի՞նչ ես ցցվել
Դու իմ ճամփին:



Նկ. ՍԱՀԱԿ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ



# ՊԱՐՏԵԶ

*Նկ. Ալ. Գրիգորյանի*

Բայց հայրը ե՛լ ավելի մռայլվեց, ոչինչ չասաց որդուն, գնաց: Եվ նրա հետ գնաց զմայլված ժողովուրդը, պալատական ու օտարական մարդիկ:

Ահա, ի վերջո, հասան կրտսեր որդու պարտեզին: Բոլորը քարացած կանգ առան կարկամելով. մշակած, խնամած և ոռոգած իր հողամասում կանգնել էր կրտսերը, իսկ պարտեզում ոչինչ չկար՝ ո՛չ մի ծաղիկ, ո՛չ մի մոլախոտ, ո՛չ մի կանաչ: Մերկ հողն էր:

— Ո՞ւր են քո ծաղիկները, որդի՛, ցո՛ւյց տուր մեզ,— ասաց հայրը:

Որդին ասաց.

— Հա՛յր, որքան ջանք արի, որքան քրտինք թափեցի, օր ու գիշեր ոռոգեցի, խնամեցի այս հողը, սակայն քո տված սերմերից և ոչ մեկը չծլեց, իմ հողաբաժինն այսպես մնաց ամայի…

Հայրը գրկեց, համբուրեց կրտսեր որդու ճակատը:

— Ապրե՛ս, որդի՛,— ասաց նա,— դու ազնիվ, շիտակ ու աշխատասեր ես: Քո բոլոր եղբայրները անազնիվ և խաբեբա գտնվեցին, որովհետև այն սերմը, որ տվել էի բոլորիդ՝ նախապես խաշել և ոչնչացրել էի ներսի հունդը, այդ սերմից ոչինչ բուսնել չէր կարող: Դու միակն ես, որ չնենգեցիր և ուրիշ տեղից բերած սերմ չցանեցիր քո պարտեզում: Ես քեզ եմ ընտրում թագավորությանս ժառանգ: Դու արդարությամբ ու շիտակությամբ կվարես ժողովրդին, որովհետև դու իսկական մարդ ես:

Ժողովուրդը հիացած էր ու զարմացած: Իսկ օտար դեսպանները տարան այս զրույցը և բոլոր հեռո՜ւ աշխարհներում տարածեցին իմաստուն թագավորի համբավը:



Բանասիրական գիտությունների դոկտոր, վաստակաշատ գիտնական ընկ. Գառնիկ Ստեփանյանը մեծանուն լեզվաբան Հրաչյա Աճառյանի մտերիմներից էր: Նրանց բարեկամությունը տևել է շատ երկար և ավարտվել Աճառյանի կյանքի հետ:

Սկսում ենք տպագրել Հ. Աճառյանի մասին ընկ. Գ. Ստեփանյանի հուշերը, որոնք թե՛ հետաքրքիր, թե՛ ուսանելի են:

# ՀՐԱՉՅԱ ԱՃԱՌՅԱՆԻ ՀԵՏ

1933 թ. ուշ աշնանն էր: Սովորում էի Երևանի պետական համալսարանում, միաժամանակ երեկոները աշխատում Պետհրատի առաջին տպարանում: Աշխատանքի բերումով ծանոթացել էիականավոր մի շարք գիտնականների հետ, ինչպես Հակոբ Մանանդյանի, Մանուկ Աբեղյանի, Երվանդ Տեր-Մինասյանի, Երվանդ Շահազիզի, Գրիգոր Ղափանցյանի և՛ ուրիշների:

Նրանք հաճախ էին գալիս տպարան, հետաքրքրվում իրենց գրքերի տպագրությամբ, լինում մասնավորապես գրաշարանոցում: Իսկ երբ լույս էին տեսնում նրանց գրքերը, մեկական օրինակ, իրենց մակագրություններով, նվիրում էին մեզ:

Առօրյա խոսակցության ընթացքում շատ էր հիշատակվում Հրաչյա Աճառյանի անունը: Արդեն գիտեի, որ նա ականավոր լեզվաբան է, հեղինակ տասնյակ աշխատությունների, որոնցից «Արմատական բառարանը» նրա անունը հռչակել է աշխարհով մեկ: Գիտեի նաև, որ նա Երևանի պետական համալսարանի դասախոս է: Առասպելներ էին պատմում նրա իմացած լեզուների թվի մասին: Բայց ավելի շատ խոսում էին նրա տարօրինակությունների, սրախոսությունների մասին, պատմում

մանր դեպքեր, որոնք սկսվում էին այնպես՝ «մի օր Աճառյանը...», ինչպես ասում են «մի օր Եզովպոսը...»

Շատ էի ուզում մոտիկից տեսնել այդ մարդուն, բայց առիթ չէր ներկայանում:

Եվ ահա մի օր, տպարանի դիրեկտոր Էդուարդ Զոփուրյանը կանչեց ինձ և ասաց.

— Շուտով սկսելու ենք շարել Հրաչյա Աճառյանի «Արմատական բառարանի» 7-րդ՝ հավելվածային հատորը: Տառեր ենք պատվիրել Մոսկվա, Լենինգրադ, Թիֆլիս: Մինչև դրանք ստացվեն, դասավորիր մեր ունեցած տառերը՝ համապատասխան տառարկղերի մեջ:

Իսկույն անցա գործի: Գրաշարանոցի մի ծայրին հատուկ բաժին ստեղծվեց ինձ համար. մի քանի շաբաթում դասավորեցի մեր ունեցած տառերը՝ հայերեն, ռուսերեն, լատիներեն: Շուտով ստացանք հունարեն, արաբերեն և եբրայեցերեն տառեր. դրանք էլ դասավորեցի. Թիֆլիսից ստացված վրացերեն տառերի տեղադրման աշխատանքներին օգնեց գրաշար Լաշքարը, որ անցյալում եղել էր «Մշակ» թերթի գրաշարը:

Երբ նախապատրաստական այս աշխատանքները ավարտվեցին, ներկայացա Զոփուրյանին և խնդրեցի շարվելիք նյութը: Նա դարակը բաց արեց, հանեց մի թղթապանակ և ինձ հանձնեց:

Աճառյանի ձեռագիրը շատ մաքուր էր, հեշտ ընթեռնելի: Նրանից հստակ գրում էր միայն Հակոբ Մանանդյանը, որի մոտ ոչ մի բառի ջնջում, փոփոխություն հնարավոր չէր գտնել:

Աճառյանի գիրքը պարունակում էր չորս բաժին, ապակետից «Արմատական բառարան»-ի առաջաբանը, համառոտագրությունները, հավելվածը և վերջաբանը: Ամենից դժվարը հավելվածն էր, քանի որ այնտեղ օգտագործվում էին բազմաթիվ լեզուների տառեր. մի մասը շարվածք էր լինելու, մի մասը՝ գրվելու էր լատինական համապատասխան հնչյուններով: Դժվարը ինձ համար վրացերեն և եբրայեցերեն տառերն էին, որ չէի էլ ճանաչում, հունարեն, արաբերեն, լատիներեն տառերը գիտեի: Ուզում էի անպայման հանդիպել հեղինակի հետ, հարցնել որոշ բաներ: Բոլոր հեղինակներն էլ գալիս էին տպարան,— մտածում էի,— Աճառյանը ինչո՞ւ պիտի չգա, մանավանդ որ նրա գիրքը այդքան դժվարությունների հետ է կապված:

Ցանկությունս հայտնեցի Զոփուրյանին, նա ասաց, որ ըստ երևույթին անհրաժեշտ պիտի լինի նման մի հանդիպում:

Հենց հաջորդ օրը գրաշարանոցի մեծ սրահի ծայրին երևաց միջահասակ, ճաղատ մի անձնավորություն: Քայլում էր թեթևակի կաղալով, ձեռնափայտը խփելով գետնին: Առաջին հանդիպած գրաշարին ինչ-որ բան հարցրեց: Ցույց տվին իմ կողմը: Գնաց հարցրեց մի ուրիշի ևս. նա էլ մատնացույց արեց ինձ: Եկավ կանգնեց մոտս, շատ հանդիսավոր ասաց.

— Ես Աճառյանն եմ. կանչել էիք, տե՛ր իմ, եկել է ձեր ծառան, ի՞նչ եք հրամայում: Ինձ նման ծերունիներին մեկ թագավորները, մեկ էլ գրաշարները կարող են իրենց ոտը բերել:

Ինձ կորցրի, մոռացա ասելիքս, ինչ-որ բան կմկմացի, ձեռքերս սրբեցի արտահագուստիս փեշերով, կանգնեցի քարացած, չգիտեի՝ պետք էր բարևե՞լ, ի՞նչ ձևով, մանավանդ որ նա, կարծեք. նման բանի չէր էլ սպասում: Տառարկղի տակից հանեցի ձեռագիրը, հավաքեցի ուժերս և ասացի.

— Էջերի կողքերին կատարված հավելումները այնքան շատ են, որ դժվարանում եմ տեղերը որոշել:

— Զարմանալի բան,— ասաց,— սլաքով ցույց է տրված. շատ հեշտ է տեղերը որոշելը: Ուրի՞շ:

— Վրացերեն և եբրայեցերեն տառերը չեմ ճանաչում, դժվարանում եմ շարել, մանավանդ եբրայեցերենը:

— Այդ էլ դատարկ բան է, կարող ես առանց ճանաչելու էլ շարել, նայիր. ինչպիսի տառ որ գրել եմ, այն էլ գտիր և տեղը դիր: Կարծում ես, թե Եվրոպայում հայագիտական գրքեր շարող ֆրանսիացի գրաշարները հայերեն տառերը ճանաչո՞ւմ են: Նայում են տառի ձևին ու դնում տեղը: Իսկ եթե ուզում ես ճանաչել, արի մեր տունը, սովորեցնեմ: Լեզու սովորելը դժվար է, բայց տառեր սովորելը՝ շատ հեշտ:

— Հետո՝ չգիտեմ, թե եբրայեցերենը աջից ձախ է կարդացվո՞ւմ, ինչպես արաբերենը, թե՞ ձախից աջ՝ ինչպես հայերենը, ռուսերենը:

— Դատարկ բան է նաև այդ,— ասաց հանգիստ,— չգիտցած լեզվի աջն ու ձախը ինչի՞դ է պետք: Նայիր, ինչպիսի տառ, ինչպիսի հերթականությամբ որ դրված է, նույն հերթականությամբ էլ դու շարիր: Իմացողը կկարդա, չիմացողին էլ պետք չէ:

Այնքան տրամաբանական էին բացատրությունները ու դիտողությունները, այնքան ճիշտ, որ ես ամաչեցի, թե ինչու էի նման միամիտ հարցեր տվել:

— Դե, ես գնացի,— ասաց,— եթե նորից անհասկանալի բաներ լինեն, կանչի՛ր:

Ձեռնափայտը խփելով հատակին, գնաց: Նայում էի նրա ետևից ու հանդիմանում ինձ:

*(Շարունակելի)*



# Ուսումնական շունը



(Չեխական հեքիաթ)

*Նկ. ՍԱՀԱԿ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

Մի հարուստ գյուղացի ո՛չ կարդալ գիտեր, ո՛չ գրել, նաև հիմար էր ու անասելի ինքնահավան: Ուզում էր, որ բոլորը իրեն համարեն գյուղի առաջին մարդը: Բայց գյուղացիները ատում էին նրան, որովհետև չար էր, ժլատ և իր շներին ավելի լավ էր պահում, քան բատրակներին:

Հարուստն իր շներին մարդկանցից շատ էր սիրում: Շատ էր սիրում հատկապես սև պուդելին՝ Ազորին և շարունակ ասում էր, որ այդպիսի շուն ոչ մի տեղ չկա, որ պուդելը ամեն ինչ հասկանում է, միայն խոսել չգիտի:

Այդ հարուստի մոտ բատրակ էր Մարտինը, և տերը միշտ նրա մոտ Ազորով հպարտանում էր:

— Գիտե՞ս, Մարտի՛ն,— մի անգամ էլ ասաց նա,— եթե շների համար դպրոց լիներ, ես Ազորին կուղարկեի ու նա ավելի խելացի կդառնար:

Մարտինը խելամիտ մարդ էր: Նա շատ դառնություններ էր քաշել տիրոջ ձեռքից, բայց ստիպված համբերում էր, որովհետև չորս երեխա ուներ և ուրիշ աշխատանք գյուղում չէր գտնում: Տիրոջ պարծենկոտությունը այնքան ձանձրացրեց Մարտինին, որ նա որոշեց դաս տալ նրան:

— Դուք չգիտե՞ք, որ շների համար վաղուց արդեն դպրոցներ են բացվել,— ասաց նա տիրոջը:

— Հիմարություններ դուրս մի՛ տա,— բարկացավ տերը:

— Հիմարություն չէ՛, տե՛ր իմ,— պատասխանեց բատրակը:— Տոներին մի անտառապահ պատմեց, որ իրենց մոտ մի դպրոց կա, որտեղ խելոք շներին նույնիսկ խոսել են սովորեցնում:

— Ա՛յ քեզ հրաշալի բան,— ուրախացավ տերը:— Իսկ դու գիտե՞ս որտեղ է այդ դպրոցը:

— Ինչպե՞ս չէ, գիտեմ,— պատասխանեց բատրակը,— հեռո՛ւ անտառի ետևում է: Իսկ ճանապարհը մինչև այնտեղ արժե քսան կրոն:

— Քսան կրոնը ինձ չի աղքատացնի,— ասաց հարուստը:— Վերցրո՛ւ Ազորին և տա՛ր այնտեղ: Ես կտամ քեզ նաև հարյուր կրոն, գուցե հարկավոր լինի ուսման վարձը միանգամից վճարել:

«Սպասի՜ր,— մտածեց Մարտինը,— տես ոնց եմ հախիցդ գալիս... աղքատին մի գրոշ չես տալիս, իսկ այսպիսի հիմարությունների համար պատրաստ ես փողերըդ շաղ տալ»:

Հարուստը Մարտինին տվեց փող և հաց, իսկ Ազորի համար ապխտած միս, և բատրակը շանն առած՝ գնաց անտառ, իր քավոր անտառապահի մոտ: Անտառապահը երբ իմացավ, թե բանն ինչումն է, մի կուշտ ծիծաղեց:

— Ազորին թող ինձ մոտ,— առաջարկեց նա:— Այստեղ ոչ ոք չի գալիս, ոչ մի կենդանի էակ այդ մասին չի իմանա, իսկ քո տիրոջը հարկավոր է մի լավ դաս տալ:

Երրորդ օրը Մարտինը վերադարձավ: Տերը սկսեց հարցուփորձ անել Ազորի մասին:

— Ափսո՜ս, որ դուք այնտեղ չէիք, տե՛ր իմ,— պատասխանեց Մարտինը:— Հենց մտանք դպրոց, Ազորը գնաց նստեց դասասեղանի մոտ, ասես արդեն դպրոց գնացել եկել էր: Ուսուցիչը շատ գովեց նրան և ասաց, որ մեկ տարի հետո դպրոցը կավարտի: Ես վճարեցի հարյուր կրոնը, իսկ մի տարի հետո պիտի վճարենք ևս հարյուր կրոն:

— Այդպիսի բանի համար հինգ հարյուր էլ չեմ խնայի,— պատասխանեց հարուստը:— Ամբողջ գյուղին ես ցույց կտամ, թե ինչ շուն ունեմ: Բոլորը կվազեն նրան տեսնելու:

Կես տարի էլ չէր անցել, որ նա բատրակին ուղարկեց պուդելին տեսության: Մարտինը գնաց անտառապահի մոտ: Օգնեց նրան խոտը հնձել և երրորդ օրը վերադարձավ:

Տերն շտապեց հարցնել, թե ինչպես էր Ազորը:

— Լա՜վ է,— ասաց Մարտինը:— Հրաշալի սովորում է: Ուսուցիչը հավատացնում է, որ նա շուտով կխոսի:

Տարեվերջին տերը Մարտինին նորից ուղարկեց շների դպրոցը, տալով նրան հարյուր կրոն ուսման վարձը և քսան կրոն ճանապարհածախս: Բատրակը գնաց անտառապահի մոտ և երրորդ օրը վերադարձավ:

— Իսկ ո՞ւր է Ազորը,— հարցրեց տերը:

— Փչացել էր մեր Ազորը, տե՛ր իմ: Շատ լավ սովորել էր խոսել, բայց եթե դուք լսեիք ինչե՜ր էր ասում: Ասում էր, որ դուք պարծենկոտ եք, որ դուք թալանել եք ողջ գյուղը, որ դուք խաբել եք ձեր քրոջը, որ դուք տանջել եք անգամ ձեր հարազատ հորը, և սպառնում էր ամբողջ գյուղին պատմել, թե դուք ինչ պտուղ եք.... Այդ ինձ այնպես զայրացրեց, որ ես մի մեծ քար կապեցի նրա վզից ու գցեցի գետը:

Հարուստը մի պահ ապշեց, իսկ քիչ անց բղավեց.

— Լա՜վ ես արել, Մարտի՛ն: Այդպիսի շունը գրոշ չարժե, նա մեզ կխայտառակեր:

Այդ օրվանից հարուստը իր շներով այլևս չէր հպարտանում: Նրա ուսումնական շունը մնաց անտառապահի մոտ և խոսել, իհարկե, չսովորեց:

*Թարգմ. ԱՍՅԱ ՍԱՀԱԿՅԱՆԻ*

# «ՄԱՏԱՂԻ» ՀԱՄԱՐ ՓՈՂ ԷՐ ՀԱՎԱՔՈՒՄ



Սահմանապահների առօրյան հարուստ է անակնկալներով: Ուրիշ բան որ չլինի, նրանք իրենք փորձնական վարժություն են կազմակերպում և սկսում հետևել «սահման խախտողին»:

«Սահմանապահների պատանի բարեկամներ» խմբակի անդամները հաճախ մասնակցում են նրանց միջոցառումներին: Այդպիսի խմբակ ունեն սահմանամերձ գյուղի դպրոցականները, որոնք նաև իրենց պարապմունքների հատուկ օրերն ունեն: Այդպիսի օրերին զինվորները պատանիներին ծանոթացնում են զենքի տեսակներին, սովորեցնում դրանցից ճիշտ և արագ օգտվել: Դպրոցականները ավելի մեծ սիրով ծանոթանում են սահմանապահի առօրյային: Այստեղ հետաքրքիր գործիքներ կան, բարձր աշտարակներ, որտեղից հեռադիտակի միջոցով կարելի է դիտել հեռավոր տարածությունները: Իսկ երեկոյան հզոր լուսարձակների լույսի տակ պետական սահմանին հետևելը գիտեք որքա՜ն հետաքրքիր է: Պարապմունքների ընթացքում պատանիները սովորում են ինչպես ճանաչել սահման խախտած կամ նոր խախտել ցանկացողին: Չէ՞ որ նրանք աննկատ մնալու համար տասնյակ միջոցների են դիմում, տարբեր հնարանքներ օգտագործում: Նման պահերին երևի յուրաքանչյուրը երազում է հանդես գալ լրտես բռնողի դերում, մի դեր, որ վիճակվեց 8-րդ դասարանցի Ալբերտ Գրիգորյանին...

Օրը կիրակի էր: Ալբերտը մենակ տուն էր վերադառնում: Փողոցում միջին տարիքի անծանոթ մի կին, որ ձու էր խնդրում բնակիչներից, գրավեց նրա ուշադրությունը: Նա մոտեցավ կնոջը:

Իմանալով, որ մաշված զգեստով անծանոթ այդ կինը իր հիվանդ տղայի համար ուխտել է մատաղի փող հավաքել ու հիմա դրանով է զբաղված, զայրացավ իր կասկածամտության համար և հեռացավ:

Գնում էր, անծանոթ կնոջը և՛ խղճալով, և՛ ցավելով նրա հիվանդ որդու համար, բայց և դեռ կասկածելով: Չէ՞ որ ընկեր սերժանտը պատմել էր, թե սահման խախտողները ինչպիսի տեսք ասես որ չեն ընդունում:

Զգուշությամբ հեռվից հետևելով անծանոթին, նա մեկ էլ զարմանքով նկատեց, որ կինը մեկից վերցրած ձուն բաշխում է մի ուրիշին և, հարցուփորձ անելով, առաջ գնում: Ալբերտը անմիջապես ուզեց ուղեկալ վազել, իմաց տալ, բայց մտածեց, որ մի լավ հետևի, տեսնի իրոք սահմանը խախտո՞ղ է, թե՞ սովորական կին: Եվ մոտեցավ նրան.

— Բարև՛, մորաքո՛ւյր:

— Բարև՛, որդիս, բարև՛... Դու այս գյուղի՞ց ես:

— Այո՛:

— Սահմանը շա՞տ է մոտիկ ձեր գյուղին:

— Այնքան էլ չէ:

— Երևի ամեն տեղ լուսարձակներ կան, չէ՞:

— Չէ՛, ի՛նչ եք ասում...

Ալբերտը ծիծաղելով ու կատակելով պատասխանում է նրա մյուս հարցերին, մինչև որ հաջորդ տանն են հասնում: Այլևս կասկածի տեղ չի մնում: Երբ կինը մի ուրիշ դուռ է ծեծում նվիրատվություն ընդունելու կամ տալու համար, Ալբերտը ցտեսություն է ասում նրան և անշտապ հեռանում: Թեքվելով հաջորդ փողոցը, նա, ոտքերում ինչքան ուժ կար, վազում է ուղեկալ:

— Ինձ թվում է, որ՛ նա հասկացավ իմ դիտավորությունը,— Ալբերտը ճանապարհին այս ամենը պատմելով ընկերոջը, խնդրում է նրան իր հետ վազել: Ուղեկալ հասան շնչասպառ և հաղորդեցին ինչ որ պետք էր: Սահմանապահները իսկույն տագնապ ազդարարեցին, զենք վերցրին, նրանց էլ մեքենայի մեջ առնելով, եկան այդ փողոցը:

Անծանոթին բռնեցին վերջին նվիրատվության պահին: Նա, ինչպես և պետք էր սպասել, սկզբում փորձեց ընդդիմանալ, բայց սահմանապահները անմիջապես հրամայեցին ձեռքերը վեր բարձրացնել: Նրան մնում էր ենթարկվել, չարությամբ լի հայացք նետելով Ալբերտի վրա, ու նստել մեքենան:

Մի քանի օր անց պարզվեց, որ բռնվածը վտանգավոր սահմանախախտ է եղել:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



# ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



ին է դպրոցը՝ 50 տարեկան, և չի փայլում ժամանակակից կահավորումով: Բայց մի այնպիսի առանձնահատկություն ունի, որով տարբերվում է մյուս դպրոցներից:

Ի՞նչ առանձնահատկություն է դա:

Խնամքով հավաքած, մաքուր տան տպավորություն է թողնում:

Անծանոթ տուն եկած հյուրը, չափում նստարանի վրա և պոկեցին նրա փեղկը:

Կոտրված նստարանը արժեր 10 ռուբլի:

ԵԹԵ ՉՈՐՍԻՑ ՄԵԿԸ ԱԹՈՌ ՓՉԱՑՆԻ, ԱՊԱ ԴՊՐՈՑԸ ՍՏԻՊՎԱԾ ԿԼԻՆԻ ՆՈՐԸ ԳՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ ԾԱԽՍԵԼ՝ 220×5=1100 ռուբլի:

ԵԹԵ ՉՈՐՍԻՑ ՄԵԿԸ ՆՍՏԱՐԱՆ ԿՈՏՐԻ, ԱՊԱ ԴՊՐՈՑԸ ՆՈՐԸ ԳՆԵ-

## ՀԱՄԱՐԱԿ ԹՎԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

հարցեր ծագելիս, դիմում է տանտիրոջը: Ես էլ այստեղ փնտրում եմ տան տերերին, և նրանք առաջըս են գալիս, ելնելով ոչ թե դիրեկտորի առանձնասենյակից կամ ուսուցչանոցից, այլ զանգը տալուց հետո, հինգի «Բ»-ից: Տան տերն է ամբողջ դասարանը: Ինձ հետաքրքրող հարցերով դիմում եմ նրանց: Եվ նրանք պատմում են: Առաջ իրենք բոլորովին չէին մըտածում, թե ինչ միջոցներով է վերանորոգվում դպրոցը: Սեպտեմբերին գալիս էին ու տեսնում դպրոցը բոլորովին նորացած՝ առաստաղը սպիտակեցված, պատերը ներկված, նստարանները նորոգված:

Երեք տարի առաջ դպրոցի դիրեկտորը պիոներներին խնդրեց տողանի դուրս գալ և ասաց.

— Բավական է որքան ես և ուսմասվարը հսկենք, հետևենք, հաշվենք... Սրանից հետո միասին կանենք այդ բանը:

Եվ նրանք սկսեցին հաշվել... Դասամիջոցին երեխաներից մեկը թառեց ուսուցչի աթոռին, ոգևորված ճոճվեց և կոտրեց աթոռի ոտքը:

Կոտրված աթոռը արժեր հինգ ռուբլի:

Մեկ ուրիշը նստարանի վրա նկարեց կողքի ընկերոջը և տակը խզբզեց իր ստորագրությունը: Երկու ընկեր էլ իրենց ուժերն էին

ԼՈՒ ՀԱՄԱՐ ՍՏԻՊՎԱԾ ԿԼԻՆԻ ԾԱԽՍԵԼ՝ 220×10=2200 ռուբլի:

ԻՍԿ ԵԹԵ ԲՈԼՈՐ ԱԹՈՌՆԵՐՆ ՈՒ ՆՍՏԱՐԱՆՆԵՐԸ ԱՆՎՆԱՍ ՄԸՆԱՆ, ԳԻՏԵ՞Ք ՈՐՔԱՆ ԳՈՒՄԱՐ ԿՏՆՏԵՍՎԻ: ԱՆՑՅԱԼ ՏԱՐԻ ԴՐԱՆՈՎ ՏՆՏԵՍՎԵՑ 1163 ՌՈՒԲԼԻ: ԵԹԵ ՎԵՐԱՆՈՐՈԳՄԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՆ ԻՆՔՆԵՐԴ ԱՆԵՔ, ԿԸՏՆՏԵՍՎԻ ԵՎՍ 1200 ՌՈՒԲԼԻ, ԻՆՉՊԵՍ ԽԱՐԿՈՎՑԻՆԵՐՆ ԵՆ ԱՐԵԼ:

Նրանց դպրոցում հատուկ հըսկող բրիգադ կա: Այդ բրիգադը հետևում է, որ դասագրքերը չփըչացվեն, պատերին ու նստարաններին գծեր չքաշվեն: Բրիգադի անդամները միշտ փոխվում են. այսօր դու ես ստուգում, վաղը՝ ստուգում են քեզ:

Իհարկե, բանը հսկելը չէ, բանն այն չէ, որ մեկնումեկը հսկողներից վախենալով՝ չկախվի դռներից, ծանոթ երաժշտության չափը գտնելու համար ներբաններով չըհարվածի պատին կամ պատուհանի ապակին չփշրի:

Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուրը գոնե մեկ անգամ խախուտ աթոռը սոսնձի, չարչարվի, սոսընձոտվի, մուրճով մատին հարվածի, հասկանալու համար, որ աթոռի վրա ճոճվելը անհրաժեշտ բան չէ:

Դասարանում գրապահարաններ են դրված: Երեխաները նոր գրքեր են վերցնում, տեղը դնելով կարդացածը: Այդ գրքերը նրանք գնել են այն 1163 ռուբլուց, որ դպրոցը պետք է ծախսեր նոր նստարաններ գնելու վրա: Քանի որ հները շատ լավ էին պահպանվել, իսկ կոտրվածներն էլ երեխաներն իրենք էին վերանորոգել, դպրոցը այդքան գումար խնայեց: Մնացած փողերով գնեցին երկու «Լետտի» կինոապարատ, մի քանի ձայնագրիչ ու ձայնապնակներ:

Սեպտեմբերից դու նորից դըպրոց ես գնում: Ուշադիր զննեցի՞ր, գտա՞ր անցյալ տարվա քո թողած գծերը պատերին ու նստարաններին: Դասասենյակում նոր նստարաննե՞ր էին դրված... Լավ կլինի, որ մինչև մայիս ամեն ինչ այնպես մաքուր մնա, ինչպես սեպտեմբերի սկզբին էր: Այդ ամենը քեզանից ու քո դասընկերներից է կախված: Փորձի՛ր, գուցե ձեր դասարանում էլ հասնեք դրան:

Եթե կարողանաք հասնել, տարեվերջին հաշվի՛ր Խարկովի 33-րդ դպրոցի երեխաների օրինակով, թե որքան փող է տնտեսվել դըպրոցի համար: Հասարակ թվաբանություն է: Եթե չկարողանաք հասնել դրան, դարձյալ հաշվիր, թե իզուր տեղը որքան դրամ եք ծախսել: Իհարկե, անպայման հարցեր, պլաններ ու առաջարկներ կծագեն քո գլխում: Այդ մասին գրիր մեզ:




## 2. ԹՈՒՆԱՎՈՐՈՂՆԵՐԻ ԵՎ ԿՍԽԱՐԴՆԵՐԻ ԺԱՌԱՆԳՆԵՐԸ

Երբեմն մենք կատարում ենք մի արարք, որ թվում է գործնական նպատակից զուրկ: Այսպես, օրինակ, միմյանց առողջության կամ հաջողության կենացը խմելու սովորությունը: Պարզ է, որ մենք գործի մեջ հաջողություն կունենանք թե չենք ունենա, ամենից շիչ կախված է նրանից, թե դրա համար բաժակ բարձրացրե՞լ ենք, թե՞ ոչ: Պարզ է նաև, որ մարդուս առողջական վիճակը ևս նրա կենացը խմելուց կամ չխմելուց չի կախված: Ուրեմն ինչո՞ւ այս ամենը հասկանալով, մենք, այնուամենայնիվ, մասնակցում ենք այդ «խաղին»:

— Ձեր կենացը, այսինչ կամ այնինչ:

— Ձե՛ր կենացը:

— Հաջողությո՛ւն ձեզ:

— Հաջողությո՛ւն:

Սրանք երբեմնի կախարդական ահեղ ծիսակատարության վերջին արտահայտություններն են: Սրա իմաստն այն էր, թե իբր մարդը դեպքերի վրա կարող է ազդել ոչ միայն անմիջական միջամտությամբ, այլև կամային ուժեղ մղումով: Բավական է մի բան շատ կամենալ, և դա ի կատար կածվի:

Սկիզբը՝ 1972 թ. «Գիտելիք» № 12։

Այժմ կենաց խոսք ասելը դարձել է մարդու հանդեպ համակրանք ու հարգանք արտահայտելու ձև:

Անցյալում ոչ մի տեղ այնքան մարդ չի սպանվել, որքան սեղանի շուրջը: Այսպես է թունավորվել Յարոսլավ Սուզդալսկին Ոսկե Հորդայի ռազմակայանում, այսպես հաճախ էր հաշվեհարդար տեսնում արքա Իվան Ահեղն իր մերձավորների հետ:

Արագ ներգործող ու նենգ թույներ պատրաստելու գործում հատկապես հռչակված էր Վենետիկը: 15-ից մինչև 18-րդ դարերում Վենետիկի «Տասի խորհուրդը» պետական ծառայության մեջ պահում էր հատուկ թունավորող մարդկանց, որոնք նրան ազատում էին քաղաքական հակառակորդներից: Պալատական խարդավանք, սիրային արկածներ, հին հաշիվներ մաքրել՝ բոլոր դեպքերում գործի էր դրվում թույնը: Բարեկամական գրույցի ժամին թույնն աննկատ կաթեցնում էին գավաթի մեջ, թունավորում ջուրը, մրգերը, ամանեղենը: Դրանից փրկություն չկար. Միակ ելքը թունավորելն էր այն մարդուն, որ կարող էր թունավորել ձեզ, և այդ անել ավելի շուտ, քան կարող էր նրա մտքովն անցնել:

Հին ժողովուրդները թույն պատրաստելու նրբին արվեստով ետ չէին մնում վենետիկցիներից: Այդ գործով զբաղվել են եգիպտացիները ու հույները ևս: Այդ հեռավոր ժամանակներից չի՞ իր սկիզբը առնում այն սովորույթը, որ տանտերը հյուրասիրության ժամանակ առաջին պատառն ինքն է վերցնում, ցույց տալով, որ կերակուրը թունավորված չէ:

Նոր Գվինեայում և Աֆրիկայի շատ շրջաններում, մեկին ջուր տալիս, առաջին կումը ինքը՝ տանտերն է անում: Իսկ զուլուսները անվայել բան են համարում, եթե գարեջրով հյուրասիրելիս կուլայից նախ իրենք չեն խմում:

Եվ երբ դուք, գինի լցնելիս նախ մի քիչ ձեր բաժակն եք լցնում և դրանից հետո միայն լցնում մյուսների գավաթները, չհավատաք նրանց, ովքեր ասում են, թե այդպես են վարվում, որպեսզի խցանի ինչ-որ ենթադրյալ կտորներ չընկնեն ուրիշների բաժակի մեջ: Դա արվում է ցույց տալու համար, որ դուք թունավորող չեք:

Առաջներում այդ սովորույթը հենց այդպիսի իմաստ էլ ունեցել է, մինչև որ դարձել է կենցաղային վարվելաձև:

Իվան Ահեղի մոտ խնջույքի



գնալիս, բոյար Խաբար-Սիմսկոյը ի՞նչ իմանար, որ նրա ճանապարհըն այնտեղից տանում է ուղիղ կառափնարան: Ինչո՞ւ արքան հրամայեց գլխատել նրան: Բոյարը հրաժարվեց սեղանի շուրջը Մալյուտա Սկուրատովից ցած նստել: Նա տեղը չզիջեց նույնիսկ այն ժամանակ, երբ Ահեղը մահվան սպառնալիք տվեց:

— Վերջին ցանկությունդ ասա...—մռայլվեց թագավորն ու դահճին կանչելու հրաման արձակեց:

Խաբար-Սիմսկոյը մի բան է խնդրում. իրենից առաջ թող դահիճը սպանի իր երկու զավակներին, որպեսզի հոր սպանությունը տեսնելիս, վախից նրանք «իրենց տոհմին անվայել» բան չասեն:

Ինչպես հայտնի է, դասային հասարակության մեջ խստագույն հիերարխիա՝ ստորաբաժանում էր սահմանվում: Այդ հիերարխիայում

*յուրաքանչյուրի տեղը որոշվում էր նրա տոհմի հնությամբ, ունեցվածքով կամ հասարակական դիրքով: Երևի ոչ մի տեղ այդ բարդ ստորաբաժանումը այնպես ակնառու չէր, որքան սեղան նստելիս: «Տոհմի ու ցեղի համեմատ՝ տեղ են տալիս, հայրենիքի համեմատ՝ պատիվ»: Տեղի համար վեճերն առիթ են տվել շատ վիրավորանքների, խռովությունների, նույնիսկ կռիվների: Երբեմն էլ բանը վերջանում էր մահվամբ:*

*Բարեկիրթ վարվեցողության նշան էր չափազանց համեստությունը՝ նստել քեզ հասանելիք տեղից ավելի ցած: Դա տանտիրոջըն առիթ էր տալիս հատուկ պատիվ տալ, ավելի բարձր տեղ նըստեցնել հյուրին:*

*Կիևյան Ռուսիայում ամենից պատվավորը իշխանի կողքի տեղըն էր:*

*Տեղերի ոչ պակաս խիստ ավանդներ կային նաև ուրիշ ժողովուրդների մեջ:*

*Այդ հարցի հետ կապված վիրավորանքներից խուսափելու մասին շատ էին մտածում հինավուրց Կիևում: Եվ այդ մտորումներն իզուր չէին: Չինացի մի փիլիսոփա*



*գտել է իմաստուն ելքը: Նա խորհուրդ է տվել հյուրերին նստեցնել ոչ թե մի ընդհանուր երկար սեղանի, այլ մի քանի կլոր սեղանների շուրջը: Այդ դեպքում վիրավորվողներ չեն լինի, վստահեցրել է նա:*

*(Շարունակելի)*

Թարգմ. Ս. ԱՅՈՒՆԻ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ



# ՏԻԿՆԻԿՆԵՐԻ ԱՇԽԱՐՀ ԳԱԼՈՒ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

Դ. ՕՍՈԿԻՆԱ

Հնագիտական նյութերը վկայում են, որ դեռևս մի քանի հազարամյակ առաջ երեխաները խաղալիքներ են ունեցել: Առաջին խաղալիքը եղել է խոտով լցված կաշվե գընդակ, հետո կավից, փայտից, ծառի արմատից շինվել են բազմազան կենդանիներ: Մի շարք վայրերում, ամենից շատ՝ Եգիպտոսում, գտնվել են տիկնիկների նման փոքրիկ արձանիկներ: Քանի որ նրանք միշտ լինում էին մեծահասակների դամբարաններում, գիտնականները ենթադրեցին, որ դրանք ոչ թե տիկնիկներ են, այլ կուռքեր, որոնց հնում մարդիկ երկրպագել են: Երեխաների ձեռքը այդպիսի խաղալիքներ չէին տալիս, վախենալով, որ հզոր ոգիները նրանց կվնասեն: Միայն շատ ժամանակ անց, մարդիկ որոշեցին, որ կուռքերը կատարել են իրենց դերը, դարձել են անվնաս, և խաղալու համար այդ արձանիկները նվիրեցին երեխաներին: Ամերիկյան հնդկացիների որոշ ցեղերի տիկնիկներ, որ կոչվում են կաշինաներ, խորհրդանշում են արևի, քամու, անձրևի աստվածներին: Նրանք այդ նվերները երեխաներին են տալիս այն նպատակով, որ նրանք հետևեն մեծերի գործին և սովորեն բարդ ծիսակատարությունների արվեստը:

Տիկնիկների նկատմամբ այդպիսի վերաբերմունքի արձագանքները պահպանվել են որոշ ժողովուրդների մոտ մինչև մեր օրերը: Մարտի 3-ին և մայիսի 5-ին, երբ Ճապոնիայում նշվում է տղաների և աղջիկների տոնը, երեխաներին նվիրում են գեղեցիկ ներկված արտասովոր տիկնիկներ: Այդ տիկնիկները ներկայացնում են տարբեր ժամանակներում ապրած ճապոնացի իշխաններին, գյուղացիներին, զինվորականներին և այլ կարգի մարդկանց: Այդպիսով նրանք հանդիսանում են ոչ միայն խաղալիք, այլև երկրի պատմությանը ծանոթանալու միջոց: Ճապոնիայում կա մի ուրիշ, ավելի հին սովորություն. երեխաներին տալիս են բամբուկի ձողերի վրա ամրացված գազանների գլուխներ, որոնցից յուրաքանչյուրը իբրև թե նրանց պահպանում է որոշակի հիվանդությունից:

Հին տիկնիկագործների աշխատանքներից մեզ հասել է շատ քիչ բան: Ամենահուսալիները պատրաստված են ոսկուց, բրոնզից և փղոսկրից: Վատ չեն պահպանվել թրծված կավե տիկնիկները: Սակայն հնում տիկնիկներ էին պատրաստում ո՛չ միայն այդ նյութերից: Փայտե և շորե տիկնիկները, որոնք հիմնականում հայտնաբերվել են Հին Եգիպտոսում, շատ խղճուկ վիճակի մեջ են մեզ հասել:

Փայտե տիկնիկների խնկական դարաշրջանը սկսվել է 15-րդ դարից, Գերմանիայում: Այստեղ, Թյուրինգյան անտառի շրջակայքում գտնվող Նյուրնբերգում և Զոննեբերգում, հիմնադրվեցին և այնուհետև մեծ հռչակի հասան

տիկնիկագործների արհեստանոցները: Զմռան երկար գիշերներին նրանք փայտից պատրաստում էին շարժվող ձեռքերով, ոտքերով ու գլխով տիկնիկներ, դեմքերը գեղեցիկ ներկում, հագցնում վառ շորեր: Իսկ գարնանը այդ վարպետները մեկնում էին աշխարհի տարբեր կողմեր և վաճառում ձմռանը պատրաստած տիկնիկները: Փայտից տիկնիկներ պատրաստելը ծանր ու երկարատև աշխատանք էր: Զոննեբերգցի վարպետ Ֆրիդրիխ Մյուլլերը հնարեց նոր նյութ՝ թղթախմորը, որը ալյուրի, թղթի, գիպսի և օսլայի խառնուրդ էր: Այն լցնում էին համապատասխան կաղապարների մեջ և արագորեն շատ տիկնիկներ պատրաստում: Թղթախմորից վարպետները ստեղծում էին տիկնիկի ձեռքերը, ոտքերն ու գլուխը, իսկ իրանը կտորից էր՝ մեջը թեփ լցված: Թանկարժեք տիկնիկների գլուխները պատրաստում էին ճենապակուց: Նրանց համար ջուրը վտանգավոր չէր, բայց կար ջարդվելու վտանգը:

Անցյալ դարի 70-ական թվականներին, երբ ստեղծվեց արհեստական պլաստիկը՝ ցելյուլոիդը, սկսեցին տիկնիկները դրանից պատրաստել: Հետագայում այդ էլ դադարեցրին. որովհետև վտանգավոր էր. երբ երեխան կրակի մոտ խաղում էր՝ ցելյուլոիդե տիկնիկը արագ բռնկվում էր:

1930 թվին ստեղծվեց պոլիվինիլքլորային կուպրը: Քչերն էին հավատում, որ դա իսկական հեղաշրջում կմտցնի տիկնիկագործության մեջ:

Պոլիվինիլքլորային կուպրից պատրաստված տիկնիկը չի վախենում ջրից ու կրակից, չի ջարդվում: Այն կարելի է ներկել ցանկացած գույնով՝ պահպանելով բոլոր նրբերանգները: Մի կարևոր առավելություն ևս նա ունի. այդպիսի տիկնիկների դեմքերը շատ շարժուն են: Նրանց գլխին ամրացվում են բնական մազերին անչափ նման արհեստական մետաքս կամ նայլոնից պատրաստված մազեր: Կարելի է լվանալ գլուխը և մազերին ցանկացած սանրվածքը տալ:

Անցած տարի Մոսկվայի «Սոկոլնիկի» զբոսայգում կազմակերպվել էր «Խաղալիք 72» ցուցահանդեսը: Այնտեղ ցուցադրված էին ·խաղալիքներ պատրաստող ժամանակակից մեքենաներ: Ցուցահանդեսում, սակայն, ամենակարևոր տեղը գրավում էին խաղալիքները, նրանց մեջ էլ՝ տիկնիկները: Նրանք իսկապես ամենա-ամենա-ամենագրավիչն էին: Մեծ, կապուտաչյա, վարդագույն այտերով տիկնիկները փակում էին աչքերը և ասում. «Մամա, մամա»: Շրթունքները շարժելով բանաստեղծություններ էին արտասանում, ախորժակով չփչփացնելով՝ ծծուկ էին ծծում: Տիկնիկները քայլում էին, թավալգլոր լինում, կաթ խմում և նույնիսկ բարուրը թրջում: Կարողանում էին նույնիսկ համբուրել: Մի խոսքով՝ այդ տիկնիկները կարողանում էին ամեն ինչ անել:

## ՀՐԱՇԱԼԻ ԿՃՈՒՃԸ

*Մետաղների, և ամենից առաջ՝ ոսկու արտադրությունը հին Եգիպտոսում համարվում էր սրբազան արվեստ: Եգիպտոսը նվաճողները խոշտանգում էին քրմերին, նրանցից դուրս կորզելու համար ոսկու ձուլման գաղտնիքը, իսկ նրանք մեռնում էին, բայց գաղտնիքը չէին հայտնում: Այդ երևույթի էությունը պարզվեց շատ տարիներ անց: Հին եգիպտացիները ոսկու հանքանյութը մշակում էին հալված կապարի օգնությամբ, որը լուծում է ազնիվ մետաղներին և այդպիսով ոսկին դուրս էր կորզվում հանքանյութից: Այդ լուծույթը ենթարկում էին այրման, և կապարը վերածվում էր օքսիդի: Գաղտնիքը թրծման կճուճների մեջ էր կայանում: Դրանք պատրաստում էին ոսկրալյուրից: Ձուլման ժամանակ կապարի օքսիդը ներծծվում էր ամանի պատերի մեջ, հեռացնելով պատահական խառնուրդները, իսկ հատակին նստում էր ոսկու և արծաթի մաքուր ձուլվածքը:*

## ԸՆԴԱՄԵՆԸ 15 ԱՄԻՆԱԹԹՈՒ

Ամերիկացի գիտնական Գ. Անգարը մի առնետի ուղեղից, որն արհեստականորեն ընտելացված էր մթից վախենալուն, դուրս է կորզել սպիտակուց՝ ըսկոտոֆոբին: Երբ նա ներարկել է «նորմալ» մկներին, որոնք սովորաբար չեն վախենում մթությունից, պարզվել է, որ նրանց

մոտ էլ է առաջացել մթից վախենալու հատկանիշ:

Այդ նյութը՝ սպիտակուցային մանրիկ մոլեկուլը, բաղկացած է ընդամենը 15 ամինաթթուներից: Հետազոտողին հաջողվել է այդ նյութից ստանալ սինթետիկ եղանակով և ապացուցել, որ դա էլ նույն ներգործությունն է ունենում, ինչ որ բնականորեն առաջացածը:

Ոսկե ձկնիկների վրա կատարված փորձերը ցույց են տվել, որ ներարկվող ակոտոֆոբինը կենտրոնանում է նրանց ուղեղի որոշակի մասերում և մթությունից խուսափելու հակում առաջացնում նաև ակվարիումի ձկնիկների մեջ:




## ՀՈԳԵԲԱՆՆԵՐԻ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆԸ



Ֆրանսիացի հոգեբանների հետազոտությունները վկայում են, որ հավասարակշռված խառնվածքի տեր մարդիկ, նրանք, ովքեր միշտ լինում են խաղաղ, լավ տրամադրության մեջ, փողոցում հազվադեպ են ենթարկվում աղետի:

## ԶՈՒՐ՝ ՕԴԻՑ



Վրացլավի գետային տրանսպորտի նախագծային բյուրոյում ստեղծել են մի հարմարանք, որը ջուր է կլանում օդից: Դա հատկապես օգտակար է, ըստ երևույթին, այն նավերի համար, որոնք լողում են արևադարձային գոտում: Այդ հարմարանքի միջոցով ստացված ջուրը պիտանի է խմելու համար, իսկ չորացված օդը հեշտությամբ կարող է օգտագործվել ներսի օդափոխման ու չործիչներում այրման պրոցեսը բարելավելու համար:

## ԵՐԿԻՐԸ ԿԼԱՆՈՒՄ Է ՎՆԱՍԱԿԱՐ ԳԱԶԵՐԸ

Շրջապատող միջավայրի համար վնասակար նյութերը երկիրը պետք է որ «կլանի» նշանակալիորեն ավելի շատ քանակությամբ, քան մինչև այժմ կարծում էին: Փորձով հաստատված է, որ մեկ քառ. կմ հողը կարող է օդից օրական կլանել 495 տոննա ածխաթթու գազ, 78 տոննա ազոտի երկօքսիդ և 5200 տոննա ծծմբային անհիդրիդ: Հողը կարող է ներծծել նաև օրգանական միացություններ, օրինակ՝ էթիլեն: Դրան շատ են նպաստում միկրոօրգանիզմները:

## ՍԽԱԼԸ ԴԱՍ ԵՂԱՎ

Դա տեղի է ունեցել անցյալ դարի վերջին: Ցյուրիխի համալսարանում, դասախոսությունից առաջ ուսանողներից մեկը փորձասեղանին դրված բանկայից վերցնում է մետաղական կալիումի մի կտոր, փաթաթում թաշկինակի մեջ ու դնում շալվարի գրպանը:

Սկսվում է դասախոսությունը, այս ուսանողը տքնաջանորեն գրի է առնում ու, բնականաբար, քիչ-քիչ քրտնում: Կալիումը ռեակցիայի մեջ է մտնում խոնավության հետ, իսկ այդ դեպքում, ինչպես գիտենք, անջատվում է մեծ քանակությամբ ջերմություն: Ուսանողն անհանգիստ շուռ ու մուռ է գալիս տեղում, վերջապես վեր է թռչում ու շփոթահար պոկում դեն նետում և՛ այրվող գրպանը, և՛ նրա պարունակությունը:

Գրպանի մնացորդը որոշ ժամանակ պահում էին համալսարանի քիմիական հավաքածուում՝ մի բանկայի մեջ դրած: Բանկայի վրա գրված է եղել. «Թողրած կալիումի ազդեցությունը մի ուսանողի շալվարի վրա»: Բայց չմոռանանք, որ ոչ միայն շալվարը, այլև ուսանողն ինքն էլ էր տուժել այրվածքից:

Սա մի դաս է բոլորիս համար. առանց թույլտվության եթե որևէ բան վերցնելը վատ է, ապա քիմիական նյութերը վերցնելը՝ նաև վտանգավոր:



## ՍՊԻՏԱԿ ՆԵՐԿԻՑ՝ ԿԱՐՄԻՐ

**Կապարի** սպիտակ ներկ (белила) կարողանում էին պատրաստել դեռևս երեք հազար տարի մեզանից առաջ: Հին աշխարհում դրա գլխավոր մատակարարողը Հռոդոս կղզին էր՝ Միջերկրական ծովում: Այն ժամանակ ներկեր քիչ կային և շատ թանկ էին: Հույն հռչակավոր նկարիչ Նիկոսը մի անգամ անհամբեր սպասում էր Հռոդոսից ներկը բերելուն: Թանկագին բեռը հասավ Աթենքի Պիրեյ նավահանգիստը, բայց այնտեղ անսպասելի հրդեհ ծագեց: Բոցը բռնեց այն նավերը, որոնցով բերել էին ներկը: Երբ հրդեհը հանգցրին, այլայլված նկարիչը բարձրացավ տուժած նավերից մեկի տախտակամածը: Նա հույս ուներ, թե բեռն ամբողջովին այրված չի լինի: Եվ իրոք, նավամբարում գտան ներկով լի տակառներ, որոնք սակայն ոչ թե այրվել, այլ ածխացել էին: Երբ տակառները բացեցին, նկարիչը զարմանքից քարացավ. դրանք լի էին ոչ թե սպիտակ ներկով, այլ՝ վառ կարմիր: Այսպես, հրդեհը թելադրեց հիանալի ներկի՝ սուրիկի պատրաստման եղանակը:



## Հ Ի Պ Ն Ո Զ

Բ. ԼԱՆԴԱ



Պատկերացրու, որ մեկը քեզ է մեկնում մաքրած սոխի գլուխը և առաջարկում է ուտել, ասելով. «Տես ի՜նչ հյութեղ տանձ է»: Դու կուտե՞ս սոխի գլուխը: Հավանաբար՝ ոչ: Եթե նույն բանն առաջարկեն մի մարդու, որ հիպնոզի ազդեցության տակ քնած է, նա կսկսի սոխի գլուխն ուտել, և այդ ժամանակ նրա աչքերը չեն արցունքոտվի: Եթե հարցնեն նրան, թե ի՞նչ է ուտում, կպատասխանի, որ ուտում է համեղ տանձ:

Եթե հիպնոզված մարդու ափի մեջ դնեն պլաստիլինի կտոր և ասեն, որ դա շիկացած ածուխ է, նրա ձեռքի մեջ կառաջանա բշտիկ, ինչպես լինում է այրվածքից: Իսկ եթե այդպիսի մարդուն ասեն, որ նա գտնվում է արևադարձային անտառում և նրա վրայով օձ է սողում, նա կքարանա՝ դեմքին սարսափի արտահայտություն:

Ինչո՞վ բացատրել, որ հիպնոզված մարդը տեսնում է ոչ այն, ինչ կա աչքի առջև, զգում է ոչ նրա համը, ինչ որ կա բերանում, և այրվածք է ստանում, երբ ձեռքի մեջ այրող ոչինչ չկա: Ինչո՞ւ է նա զգում այն, ինչ ներշնչում է նրան հիպնոզողը:

Մեր օրգանիզմի գլխավոր հրամանատարը՝ ուղեղըն է, երբ մենք սթափ ենք, ուղեղ-հրամանատարը իր ենթականերից՝ աչքերից, ականջներից, լեզվից, մաշկից, զեկույցներ է ստանում այն մասին, ինչ իրականում կա, ինչ երևում է, ինչ լսվում է, ինչ համ ունի տանձը: Այդ տեղեկությունները ստանալով, ուղեղ-հրամանատարը վճիռ է կայացնում և հրամաններ տալիս, թե ուր գնան ոտքերը, աչքերը ուր նայեն, ինչ անեն ձեռքերը: Իսկ երբ մենք քնում ենք, քնում է և՛ մեր ուղեղը, քնում են և՛ նրա ենթակաները:

Մինչդեռ երբ մարդը հիպնոզված քնած է, նրա ամբողջ ուղեղը քնած չէ: Ուղեղի մի մեծ մասը արթուն է: Եթե հիպնոզողը ասում է, որ ձեռքիդ մեջ վառվող ածուխ է, ուղեղի արթուն մասը հավատում է նրան և հրաման է տալիս ձեռքին. «Պաշտպանվի՛ր այրողից»: Ահա և ձեռքի մեջ առաջանում է բշտիկ: Ուղեղը չի կարող ստուգել, թե իրոք ձեռքի մեջ ածո՞ւխ է, որովհետև նրա բոլոր օգնականները՝ աչքերը, ականջները, մաշկը, քնած են:

Մարդու հիպնոզված քնելու այդ զարմանալի ընդունակությունը բժիշկները օգտագործում են: Այդ բժիշկներին կոչում են հիպնոլոգներ: Նրանք մարդուն հիպնոզում՝ քնեցնում են, որպեսզի ներշնչեն նրան զվարթություն, լավ տրամադրություն, կամ թողնել ծխելը, ցավազրկվել:



## ՁՄԵՌ

ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

Ձյունն է իջնում հանդ ու ձորին,
Ու լեռներն են ճերմակ հագել,
Եվ իմ փոքրի՜կ խնձորենին
Թվում է, թե նոր է ծաղկել:

Ձյունն է իջնում քուլա-քուլա,
Քուն են մտել ծաղիկ ու սեզ,
Պատից կախված սառցե լուլան,
Ձմեռ պապի թուրն է ասես:

Համրացել է մանուկ առուն,
Ու սարսուռ է պատել նրան,
Բժշկի պես ճերմակ հագած,
Ծառն է ահա թեքվել վրան:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ԱՍՏՂԻԿ ԹԵՎԱՆՅԱՆ

Հաշմանդամ չէ,
Ոչ էլ ծերուկ,
Բայց քայլում է
Փայտերով զույգ:

Դահուկորդ

Կլոր պատերով մետաղյա մի տուն,
Հողի որդիքն են այնտեղ հավաքվում,
Եվ երբ կրակն է տակը թեժանում,
Ներսում կռիվ ու աղմուկ է լինում:

Կաթսա

Ձևը՝ նման երկրագնդի,
Մեջքին կապած հաստլիկ գոտի,
Եթե անես դու երկու կես,
Միջուկն համեղ կճաշակես:

Ընկույզ

Մարմին ունի օձագալար,
Պարանոցը՝ անչափ երկար,
Ո՛չ ընձուղտ է և ո՛չ էլ օձ,
Այլ՝ մեզ համար մի լավ ջերմոց:

Ջեռուցման մարտկոց


ՆԿ. ՎԼԱԴԻՄԻՐ ԱԲՐՈՅԱՆԻ

Լույս է տեսնում 1923 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 1 հունվար 1973 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Ձմեռ պապի ծիծաղը — Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ . . . . . 2
Բանվորների երեխաների համար — Դ. ԿԱՐՊԵՆԿՈ . . . 3
Ձմեռային հանելուկներ — Դ. ՖԻԼՈՅԱՆ . . . . . 3
Զանգակներ — Վ. ԿԱՐԵՆՑ . . . . . . 5
Խաղալիքներս պաշտպանվում է — Ն. ԶԱՐՅԱՆ . . . . 6
Ճանապարհ — Դ. ԴԱՐԲԻՆՅԱՆ . . . . . . 9
Ինչ արեցին մականունները — ԴՈՒԼԼԵՆԴԵՅ . . . . 10
Ծաղկուն պարտեզ — Զ. ԽԱԼԱՓՅԱՆ . . . . . . 12
Ճուտը և կեղևը — Վ. ԲԱԴՐԵՎԱՆԴՅԱՆ . . . . . 12
Հրաչյա Աճառյանի հետ — Գ. ՍՏԵՓԱՆՅԱՆ . . . . 13
Ուսումնական չուներ . . . . . . . . . 15
«Մատաղի» համար փող էր հավաքում — Վ. ՄԵԽԱԿՅԱՆ 16
Հասարակ թվաբանություն . . . . . . . 17
Մարդիկ սեղանի շուրջը — Ա. ԴՈՐԲՈՎՍԿԻ . . . . 18
Տիկնիկների աշխարհ գալու պատմությունից —
Դ. ՕՍՈԿԻՆԱ . . . . . . . . . . 19
Ինչուկ . . . . . . . . . . . . 21
Հանելուկներ — Ա. ԹԵՎԱՆՅԱՆ . . . . . . . 23
Եղևնին — Վ. ՀՈՎՍԵՓՅԱՆ
Առաջին ձյունը — Խ. ՀՐԱՉՅԱՆ

Շապիկի առաջին էջը՝

Նկ. Ռուբեն Մանուկյանի

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍԻՐԱՍՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: 375200 Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 08963: Պատվեր՝ 1877: Տպաքանակ՝ 83600. Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 22/XII 1972 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ՝ 10 կ.

ԻՆԴԵՔՍ՝ 72806



## ԵՂԵՎՆԻՆ

ՎԻԼԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

— Ինձ անտառից մի՛ տարեք,—
Ասաց կանաչ եղևնին,—
Այստեղից էլ ես կասեմ՝
Շնորհավոր ձեր տարին:

Երբ նստում է ձյունը սառ
Ու լռում է երբ առուն,
Ոչ մի կանաչ թուփ ու ծառ
Դու չես գտնի անտառում:

Էլ ի՞նչ անտառ, ի՞նչ այգի,
Որ չունենա կանաչ ծառ,
Ինձ մի՛ տարեք անտառից,
Զարդն եմ նրա ես դալար:

## ԱՌԱՋԻ՛Ն ՁՅՈՒ՛ՆԸ

ԽԱՉԻԿ ՉՐԱՔՅԱՆ

Պատուհանիս տակ մինչև լուսաբաց
Աղմկում էին բարդիները մերկ:
Ծեգին մտիկ տամ՝ ի՞նչ տեսնեմ հանկարծ.
Ճերմակ են հագել անպատասն ու հերկ:

Իսկ մի քիչ այն կողմ անշառավ ու լուրջ,
Աղվեսն է ելնում ձորակից վերև.
Ճերմա՞կ-ճերմակ են թաթիկներ ու դունչ:
Ասես տատիկի մածունն է կերել...

Նկ. ՀԵՆՐԻԿ ՄԻՐԱՎՅԱՆԻ